1889

# ՉՈՐՍ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒ

# ԾԱԳՈՒՄՆ

ՈՒ

# ՎԱՒԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ




ԳՐԵՑ

ՂԵՒՈՆԴ ՎԱՐԴ. ԴՈՒՐԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1906

Durean, Ghewond
Chors Awetarannerui tsagumn

# ՉՈՐՍ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒ

## ԾԱԳՈՒՄՆ

ՈՒ

## ՎԱՒԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ

ՂԵՒՈՆԴ ՎԱՐԴ. ԴՈՒՐԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1906



ՎԱՂԱՄԵՌԻԿ ԵՂԲՕՐՍ

**ԱՂԵՔՍԱՆԴՐ ԴՈՒՐԵԱՆԻ**

*Յ Ի Շ Ա Տ Ա Կ Ի Ն*

(Ծնեալ 1871 + 1884)

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



*Մեր ներկայ սերունդին Աւետարաններու նկատմամբ ունեցած անտարբերութիւնը, անոր ծագման եւ վաւերականութեան մասին ունեցած կասկածն ու տարակոյսը, Թելադրեցին զիս համառօտ եւ ամփոփ ուսումնասիրութիւն մը ձեռնարկելու, հետեւելով Եւրոպայի ականաւոր գիտնական մեկնաբաններու անաչառ եւ անկողմնակալ գրուածոց։*

*Առանց կանխակալ կարծութեան նոյն գրքոյկովս հաստատած եմ Թէ Չորս Աւետարաններն ականջալուր եւ ականատես անձանց ձեռամբ պատրաստուած գըրքեր են եւ հիմն ու կռուանն են քրիստոնէական աստուածային կրօնի։*

*16 Մայիս 1905* **Դ. Վ. ԴՈՒՐԵԱՆ**



# ՉՈՐՍ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒ

## ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ՎԱՒԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ (*)



**ՉՈՐՍ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐԸ** (*Յուն.* εὐαγγέλιον = *էվանկէլիոն*) *կ'աւետեն մարդոց Աստուծոյ այն սէրը, որ յայտնուեցաւ իր Որդւոյն կեանքովը, խօսքովը, գործերովը ու մահուամբը: Չորս Աւետարանները՝ չորս լուսաւորներ են, որ կը լուսաւորեն մեր կեանքի ճամբան ու այն կեանքը՝ որ մեզ պահուած է երկնքի մէջ: Քսան դարերէ ի վեր քրիստոնէական եկեղեցւոյ մէջ կ'ապրին տանք և կ'ապրեցնեն հաւատացեալները յուսով լի անմահութեան այն վշտի, ցաւի, տառապանքի աշխարհին մէջ:*

---

(*) Հետեւողութեամբ Նոր մեկնիչներէն Կոտէի, Տը Հօ աբբայի և Վիկուրուի:

Այս Չորս Աւետարանները ինչ ինչ նկատմամբ այնքան կը նմանին իրարու, որ յաչս ամէն ընթերցողի մը իրարմէ օրինակուած կը թուին ըլլալ։ Երբ Եկեղեցւոյ հաւատացեալ Քրիստոնեայն առաջին անգամ այս Չորս Աւետարանները միանաբար ձեռք առնէ, այնպէս գիտէ թէ և ոչ մէկ տարբերութիւն կայ անոնց մէջ։ Սակայն այդ առերեւոյթ միօրինակութիւնը շուտով կը անհետի աւելի ուշադիր ընթերցումով մը։ Յաչս քիչ մը սրբամիտ ընթերցողի մը այդ տարբերութիւնները ի յայտ կու գան, կը շեշտուին, կ'արտայայտեն այնպէս, ինչպէս չորս եղբայրներու դիմագիծներու տարբերութիւնը, որոց լուսանկարին վրայ ի սկզբան ընտանեաց դիմագծի նմանութիւն նշմարուած էր։

Ընթերցողը առաջին տարբերութիւնը պիտի գտնէ Յովհաննու և միւս երեք — Մատթէոսի, Մարկոսի և Ղուկասու — Աւետարաններուն միջև։ Յիսուսի փրկագործութեան պատմութիւնը, քիչ տարբերութիւններով կը ներկայանայ միւս երեքին մէջ, որ նոյն են ընդհանրապէս,

այնպէս որ դիւրին է զուգահեռականութիւն (parallelisme) մը հաստատել անոնց պատմութեան մէջ։ Այս պատճառաւ է որ համաբարբառ = համացոյց = խմբագիր (synoplique) կոչուած են։ Յովհաննու Աւետարանը բոլորովին տարբեր ուղղութիւն և պատմութիւն մը ունի։ Յիսուսի պաշտօնէութեան ընթացքը բաւական տարբեր գծերով նշանակուած է հոն, որով և դժուարին կ'ըլլայ Յովհաննու Աւետարանին պատմութիւնը զուգահեռաբար քալեցնել միւս երեք Աւետարաններու պատմութեան հետ, այլ միայն կրնայ նկատուիլ և է լրացուցիչ պատմութիւն մը միւս խմբագրական Աւետարաններու։

Երկու տարբեր միջոցներ ունինք հին գրուածքի մը ծագումին վերանայու համար։ 1. Այն տեղեկութիւնները՝ զորս հնութիւնը մեզ հասուցած է Գրքին վաւերականութեան, մանաւորապէս անոր հեղինակին վրայ, ինչպէս նաև այն հետքերը, զորս իր գոյութիւնը ձգած է ժամանակակից կամ յետնագոյն գրուածներու մէջ։ 2. Այն նշանները՝ զորս գործն իսկ

կը բովանդակէ յինքեան անոր ծագման վերաբերեալ զանազան խնդիրներու վրայ, նշաններ՝ որ կը յայտնուի իսկոյն մանրակրկիտ ուսումնասիրութեամբ մը։

Երբ այս երկու միջոցները իրենց արդիւնքին մէջ կը համաձայնին իրարու, վաւերականութիւնը կամ ստուգութիւնը հաստատուած է գիտութեան ցոյց տուած մէթոտով։ Եթէ արդիւնքները չհամաձայնին իրարու, գիտունը կ'ստիպուի անկախ վիճակի մէջ թողուլ իր դատողութիւնը։

Այս ընթացքին հետեւինք ուրեմն, վասն զի գիտութիւնը ուրիշ կերպ ցոյց չտար ո և է բան քննելու համար։ Նախ քննենք այն պատմութիւնները, որ Եկեղեցւոյ հնագոյն վարդապետներէն հասած են մեզ՝ մեր Աւետարաններու վաւերականութեան համար։ Այս ստուգապատում վկաներուն մէջ կը գտնուին այնպիսիներ, ինչպէս պիտի տեսնենք, որոնք անձնապէս ճանչցած էին Առաքեալները։ Առաքելական գրուածներու ծագման վրայ անոնց պատմութիւնները նշանաւոր են ընդհանրապէս իրենց պարզութեան հանգա-

մանքով, որ կը հակասէ յետագայ մատե-
նագիրներու գրուածներու մէջ նշմարուած
բարեպաշտական ընդլայնումներուն։ Լսենք
ուրեմն, ամէն բանէ առաջ բոլոր այդ
ձայները՝ որ առաքելական ժամանակներէն
կուգան կերպով մը մեզ։ Յետոյ այս հին
վկայութիւններու հետ բաղդատենք այն
նշանները՝ զորս ուսումնասիրութիւնը գըտ-
նել պիտի տայ մեզ նոյն իսկ Աւետարան-
ներուն մէջ։

Մեր նպատակը պիտի ըլլայ հաւատաց-
եալներուն ճշգրիտ գաղափար մը տալ
Աւետարաններու ստուգութեան և վաւե-
րականութեան մասին։



# Ա. ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԸ



*Ա. Աւանդութեան համաձայն, Եկեղեցւոյ առաջին դարերէն՝ Մատթէոս առաքեալ մինչև նկատուած է խմբագիր Աւետարաններու առաջինը։ Ըստ Մարկոսի* (Բ. 14) *Ալփէոսի որդին էր Մատթէոս, Գալիլիոյ գաւառէն։ Առաքելական պաշտօնի կոչուելէն առաջ մաքսաւոր կամ աւելի ճիշդ բառը գործածելով հարկահաւաք* (τελονής) *էր Կափառնայումի մէջ։ Յիսուսի մէկ հրաւէրին վրայ (Մատթ. Թ.* 9—10) *թողուց իր գործը և հետևեցաւ Յիսուսի։ Մարկոսի և Ղուկասի Աւետարաններուն մէջ Ղեւի անունով կը յիշուի. հաւանականաբար իր կոչումէն առաջ Ղեւի անունը ունէր և Յիսուս փոխեց իր անունը երբ Առաքելական պաշտօնի մէջ մտաւ և դրաւ Մատթէոս՝ որ կը նշանակէ «պարգեւ Աստուծոյ», ինչպէս որ Նաթա-*

նայէլին՝ Բարթողիմէոս, Սիմոնի՝ Պետրոս, Սողոսին՝ Պօղոս դրաւ։

Մատթէոսի կեանքին նկացեալ մասին վրայ մանրապատում և ստոյգ տեղեկութիւն մը չունինք։ Կը կարծուի՝ թէ երկար ատեն Հրէաստանի մէջ ապրեցաւ և ապա թողուց իր հայրենիքը և գնաց ուրիշ երկիր և Եթովպիա՝ հո՛ն քարոզելու Աւետարանը (Եւսեբ. Գ. 24)։ Իր կեանքը կնքեց մարտիրոսական մահուամբ։ Կղեմէս Աղեքսանդրացի կը ներկայացնէ Մատթէոսը իբր ծայրայեղ խստակեաց մը, երբեք միս չէր ուտեր ան, այլ կը սնանէր միայն պտուղով և բանջարեղէնով։

Մատթէոսի Աւետարանի ծագման և վաւերականութեան վրայ երկու հնագոյն տեղեկութիւններ ունինք, մին Պապիասինն է, որ եպիսկոպոս էր Փռիւգիոյ Հերապոլիս քաղաքին և տեսած է Յիսուսի մօտաւոր աշակերտները և անոնցմէ առած է Աւետարաններու մասին տեղեկութիւններ։ Հաւանաբար 160 թուականին մեռած է Պապիաս։ Միւսն է՝ Երանոսինը, որ երէց և ետքը եպիսկոպոս եղաւ Լիոնի.

սա աշակերտած է Պօղիկարպոսի, Յովհաննէս Աւետարանչին աշակերտին, և անկից քաղած է իր տեղեկութիւնները։ Երանոս մեռած է շուրջ 200 թուականին։

Ահաւասիկ Պապիասի յայտարարութիւնը «Մատթէոս՝ Յիսուսի Քրիստոսի պատգամները եբրայական լեզուաւ գրեց, և իւրաքանչիւր ոք թարգմանեց զանոնք իր կարողութեան համեմատ»։ Խնդիր է թէ ի՞նչ պէտք է հասկնալ պատգամներ (Յն. τὰ λογία = դա լօղիա) բառով։ Պէ՞տք է հասկնալ միայն Յիսուսի քարոզութիւնները. եթէ այո՛, այն ատեն Մատթէոսի շարադրած եբրայական գրուածքը պիտի չըլլար իսկ պատմութիւն մը, ինչպէս ունինք մեր հիմակուան Մատթէոսի Աւետարանով, այլ պարզապէս Յիսուսի վարդապետութեան մէկ ամփոփումը։ — Ինչպէս որ քննադատներէն ոմանք՝ Շլէյմախըր, Վայս, Ռընան ուզեցին Պապիասի այս վկայութեան զօրութիւնը տկարացնել, առարկելով թէ այդ τὰ λογία = պատգամ բացատրութիւնը շատ տարտամ է և չակնարկեր Մատթէոսի ամբողջ Աւետարանին, այլ՝

միայն այն ճառերուն՝ որ «Լերան քարոզ» անունով ծանօթ են։

Բայց եկեղեցական բոլոր Ս. Հայրերն ալ, ինչպէս Երանոս, Կղեմէս Աղեքսանդրացի, Որոգինէս և այլն, իրենց գրուածներուն մէջ λογία, պատգամ բառը կը գործածեն ոչ միայն քրիստոնէական հիմնական ճշմարտութիւններ նշանակելու իմաստով, այլ նշանակելու այն Աւետարանները, զորս կը գործածենք հիմա։ Փոտինոս՝ Աւետարաններուն τὰ κυριακὰ λογία = պատգամք Տեառն՝ անունը կուտայ. իսկ ուրիշներ՝ λογία τοῦ Κυρίου նոյն բառերը կը գործածեն, իմանալով Յիսուսի ամբողջ կեանքը, ամբողջ Աւետարանը։

Գալով լեզուին՝ հոս ալ դժուարութեան մը կը բախինք առաջին պատեհութեամբ. վասնզի Մատթէոսի Աւետարանին բնագիրը Յունարէն է, մինչդեռ Պապիաս կը վկայէ թէ Մատթէոս իր աւետարանը գրեց եբրայական լեզուաւ։ Սակայն Երկրորդ դարու բոլոր եկեղեցական Հարք միաձայն կը վկայեն թէ Մատթէոսի Աւետարանը Յունարէն լեզուաւ է և ամբողջ

եկեղեցին ալ ընդունած է իբր վաւերական գործ Մատթէոսի ։

Պապիասի վերոյիշեալ վկայութեան վերջին մասով — «Ամէն ոք զայնս իր կարողութեան համեմատ թարգմանեց» — կը հասկնանք՝ թէ Մատթէոսի Աւետարանը ի սկզբան Եբրայական լեզուաւ գրուած էր և երբ պէտք զգացին զայն կարդացնել ժողովուրդին՝ Հռովմէական աշխարհի և Փոքր Ասիոյ մէջ, իրենց կարողութեան համեմատ Եբրայական այդ Աւետարանը թարգմանեցին աշխարհի, այսինքն՝ Յունարէն լեզուաւ, մինչև որ Եբրայական լեզուին քաջահմուտ առաքելական Ս. Հայր մը Յունարէնի վերածեց զայն ամբողջապէս ։ Այդ Յունարէնն է՝ որ հասած է մեզ, իսկ Եբրայական բնագիրը կորսուած է ։ Երասմոս հետեւեալ կերպով կը խօսի Մատթէոսի Աւետարանի ծագման և վաւերականութեան վրայ. —

«Մատթէոս Հրէից մէջ գտնուելով անոնց լեզուաւ գրեց իւր Աւետարանը, երբ անդին Պետրոս և Պօղոս կը քարոզէին Հռովմի մէջ երկնային աւետիսն և կը

դնէին հոն Եկեղեցւոյ Հիմունքը»։ (ԵՐԱՆՈՍ, Ընդդեմ Հրձ. Գ. 1), Ըստ այսմ Առաքեալը Պաղեստինի մէջ պէտք է գրած ըլլայ 63—64ի ժամանակները. վասն զի այս ատենն է միայն որ Պետրոս և Պօղոս կրցան իրարու հանդիպիլ Հռովմի մէջ։ Աւանդութիւն եղած է՝ թէ Հռովմի մէջ Եկեղեցին այս երկու առաքեալներէն և ոչ մին հիմնեց. վասն զի ապացուցուած է թէ եկեղեցի կար արդէն Հռովմի մէջ, անոնց այդ քաղաքը ժամանումէն շատ տարիներ առաջ։ Պօղոսի Հռովմ ժամանումը տեղի ունեցած է 61ին (Գործք. ԻԸ), և իր առ Հռովմայեցիս գրած թուղթն 58ին յղած է, ուր բացայայտ է թէ Պօղոսի և Պետրոսի Հռովմ հասնելէն շատ առաջ եկեղեցին հաստատուած էր հոն։ Կ'երեւի թէ Երանոս կ'ուզէ ակնարկել այն եկեղեցական կազմակերպութեան, որ որոշ հանգամանքով մը միայն կը ներկայանայ Պօղոսի և Պետրոսի ներկայութեամբ։

Մատթէի Աւետարանի ծագման վրայ մեր յիշած երկու հնագոյն վկայութիւններէն զատ՝ կա՛ն և ուրիշ վկայութիւններ

*ալ, որք ես կարեւորագոյն են իբրեւ ամփոփիչ Ս. Հարց բոլոր յայտապարութեանց։ Եւսեբիոսինն է առաջինը, որ կեսարիոյ Եպիսկոպոս էր Գ-րդ դարու վերջերը եւ Դ-րդ դարու սկիզբը։ Նա կը վկայէ Մատթէոսի Աւետարանի մասին հետեւեալ խօսքով. «Մատթէոս Քրիստոսի Աւետարանը Հրէից քարոզելէ յետոյ ուզելով ուրիշ երկիրներ ալ երթալ քարոզել, անոնց թողուց իր Աւետարանը իր երկրին լեզուաւ գրուած» (Եկեղ. Պատմ. Գ. 24)։ Հաւանականաբար Առաքեալները, ինչպէս Մատթէոս, 58—60ի ժամանակները թողած ըլլան Երուսաղէմը։ Եւսեբիոսի այս հատուածին համեմատ Մատթէոս առաքեալը Պաղեստինու մէջ խմբագրած պէտք է ըլլայ իր Աւետարանը 58ի ժամանակները։*

*Երկրորդը Եպիփան Կիպրացւոյնն է։ Սա խօսելով Նազարէթցի աղանդաւորներու (Նազովրեցիներու) մասին կ'ըսէ. «Ունին նաեւ Մատթէի Աւետարանը ամբողջութեամբ Հրէական բարբառով. այժմ պահած են այնպէս ինչպէս երբեմն գրուած էր. բայց չեմ գիտեր թէ Եպիոնեանց Նման*

*ինչո՞ւ զանց ըրած են Յիսուսի ազգաբանութիւնը» (Հերձ. իԹ. 9), — Իսկ Եպիփանեանց մասին խօսելու ատեն կ'ըսէ, «Կ'ընդունին Մատթէի Աւետարանն եւս եւ կը կոչեն Աւետարան ըստ Եբրայական* χατ' ἑβραίους)*. ճիշդ է այս անուանումը, վասն զի Մատթէոս է միայն որ Եբրայեցերէն գրեց աւետարանը»։ Ս. Եպիփան Պաղեստինի մէջ ծնած և Հրէից մէջ մեծցած է. լաւ Եբրայեցերէն գիտէր, հետեւաբար կրնար կարդացած ըլլալ այդ հերետիկոսաց ձեռք գտնուած Աւետարանը։*

*Դարձեալ Բրդդարէն սկսեալ Եկեղեցւոյ Հայրերը առաջին Աւետարանէն ինչ ինչ համարներ վկայութեան կոչած են իրենց սրբազան երկասիրութեանց մէջ, որք կ'ապացուցեն Մատթէոսի Աւետարանին գոյութիւնը։ Ս. Յուստինոս վկայն, որ ծնած է յամի Տեառն* 103 *և մարտիրոսացած յամի* 167, *Առաքելոց աշակերտներէն շատերը կը ճանչնար. իր դէպ ի Իտալիա, Փոքր Ասիա և Եգիպտոս ըրած յաջորդական ճանապարհորդութեան միջոցին, կրցած էր տեսնել Հռովմի, Եփեսոսի և Աղեք-*

սանդրիոյ մէջ գործածուած աւետարան-ներն ։ Իր ի նպաստ Քրիստոնէական կրօնի ջատագովական գրքին մէջ , զոր գրած է 150 թուականին , բացայայտ կ'ըսէ թէ « Քրիստոնեայք առաւօտուն կանուխ կ'ել-նեն ազօթելու և հաղորդուելու . այս առթիւ կը կարդան հրապարակաւ Մար-գարէից գրութիւնները և Առաքելոց Յի-շատակարանները» ։ Ուրիշ տեղ մըն ալ կ'ըսէ թէ «Առաքելոց Յիշատակարանն կը կոչուին ԱՒԵՏԱՐԱՆՔ» . և անոր ըրած այլ և այլ կոչումներն կը հաստատեն Մատթէի Աւետարանին գոյութիւնը , ( Տես ՋԱՏԱԳՈՎՈՒԹԻՒՆ Յուստինիա-նոսի , Ա . 60 ) ։

Մատթէոսի Աւետարանը նոյն իսկ աւե-լի կանուխ ալ յիշատակուած կը տեսնենք ։ Թուղթ Բառնաբասի ըսուածը , որ նոր գտնուեցաւ և որուն թուականն կը վերա-նայ 110 կամ 115 , Քրիստոսի մէկ խօսքը վկայութեան կը բերէ այնպիսի բանաձե-ւով մը , որ Եկեղեցւոյ մէջ իբրև սատուա-ծային հեղինակութիւն ներկայուած գրքե-րուն համար միայն կը գործածուի . «Որպես

եւ գրեալ է, «Բազումք են կոչեցեալք սակաւք են ընտրեալք» (*)։

Յիսուսի այս խօսքը ուղղակի Մատթէոսի 14 համարէն առնուած է. վասն զի ուրիշ տեղ չէ յիշուած այսպիսի խօսք մը։ «Որպէս եւ գրեալ է» բանաձեւը միայն և միայն կը գործածուէր աստուածային հեղինակութիւն նկատուած գրքերու համար։ Մինչև այս վերջին ժամանակներս «որպէս և գրեալ է» բանաձեւը միայն Բառնաբասի Թղթին լատինական թարգմանութեան մէջ կը կարդացուէր, բայց Սինայի Ս. Կատարինէ վանքէն գտնուեցաւ և Յունարէն բնագիրը և աւելի արժէքը բարձրացուց սոյն վկայութեան։ Ահա ամենաաննշան կէտ մը որ իբր առաջնակարգ վկայութիւն Առաջին Աւետարանի ծագումը և վաւերականութիւնը ու պատմական արժէքը կ'ամփոփէ իր մէջ։ (Hist. de J. C. par M. de Pressensé. էջ 150)։

* * *

(*) Μήποτε ὡς γέγραπται· «πολλοὶ κλητοί, ὀλίγοι δὲ ἐκλεκτοί».

Մոռնանք այժմ Աւետարանիս ծագման և վաւերականութեան մասին եղած արտաքին այս վկայութիւններն և ուսումնասիրենք Աւետարանը, իր էջերուն մէջ փնտռելու հեղինակին նպատակին, անունին և թուականին հետքերը:

Հեղինակին խմբագրութեան նպատակն եղած է Յիսուս Քրիստոսի կեանքի պատմութեամբ Հրէից ապացուցել՝ թէ Նա ճշմարիտ մարգարէներէն կանուխէն գուշակուած Մեսիան է. Դաւթի սերունդէն սպասուած Իսրայէլի իշխանն է, հետեւաբար և Աշխարհի Տէրն ու Փրկիչը, թէ Նա եկած է իր կեանքովն ու գործքովը օրէնքին ու մարգարէութեան լրումը ըլլալու: Աւետարանչին այս նպատակը գրքին առաջին բառերէն իսկ կ'երեւի. «Գիրք Ծննդեան Յիսուսի Քրիստոսի, որդւոյ Դաւթի, որդւոյ Աբրահամու» (Ա. 1): Ըստ այսմ՝ Յիսուս շառաւիղն է ա՛յն Աբրահամին «յոր, ըստ Մովսէսի, օրհնեցին ամենայն ազգերկրի»: Որդին է Դաւթի «որ, ըստ Եսայեայ, հաստատեսցէ զաթոռն Դաւթի ի յաւիտեան»:

Երկու ներքին իրողութիւններով եւս կրնայ հաստատուիլ թէ Աւետարանիս խմբագրութիւնը Մատթէոս մաքսաւորի գործն է ։ որք թէև ըստ երեւոյթին շատ աննշան, այլ թերեւս այսպիսի պարագայի մը մէջ շատ աւելի նշանակալից են ։

1. Առաջին Աւետարանը միայն երկոտասան Առաքելոց անուանց ցանկին մէջ՝ Մատթէոսի անուան վրայ կը յաւելու մաքսաւոր մակագրութիւնը, որ ըստ հրէական ըմբռնման պատուաբեր գործ մը չէր, բայց ստորնութիւն չհամարիր այսպիսի անպատուաբեր վիճակէ մը կոչուած ըլլալը յիշատակել (Մատթ. Ժ. 3)։

2. Երկոտասան Առաքելոց անուանց ցանկը, որ կը գտնուի խմբագիր երեք Աւետարաններու մէջ, ուր ընդհանրապէս անունները զոյգ զոյգ բաժնուած են. և թերեւս այս զոյգերն Տէրը ինքն կազմած էր զանոնք առաջին անգամ քարոզելու յղած ժամանակ։ Չորրորդ զոյգը կազմուած է Մատթէոսէ և Թովմասէ։ Արդ՝ միւս խմբագիր Աւետարանչաց մէջ Մատթէոս զոյգին առաջինը նշանակուած է,

*մինչդեռ առաջին Աւետարանին մէջ երկրորդ տեղը կը գրաւէ* (*)։

*Իսկ գալով թուականին. ասոր պատասխանը կու տայ Գլուխ ԻԴ.* 15։ *Յիսուս կ'ուզէ զգուշացնել Պաղեստինի մէջ բնակող Իսրայէլացի հաւատացեալները մասնակցութենէն այն պատերազմին, որոնք Երուսաղէմի կործանումը պիտի բերեն իրենց հետ։ Կը յորդորէ զանոնք որպէս զի ժամանակ մը քաշուին լայնկոյս Յորդանանու լեռնոտ երկրին մէջ, և անոնց փա-*

---

(*) *Այս երկու պարագաները աւելի հասկնալի ընելու համար երեք խմբագիր Աւետարաններու մէջ գտնուած երկոտասան Առաքելոց անուանց ցանկերը կը դնենք հոս և ընթերցողին ուշադրութեան կը յանձնենք։*

**ՄԱՏԹԷՈՍ**

*Պետրոս և Անդրէաս*
*Յակոբոս և Յովհաննէս*
*Փիլիպպոս և Բարթողիմէոս*
*Թովմաս և ՄԱՏԹԷՈՍ ՄԱՔՍԱՒՈՐ*
*Յակոբոս Ալփեան և Ղեբէոս (Թադէոս)*
*Սիմոն Կանանացի և Յուդա Իսկարիովտացի*

(*Մատթ. Ժ.* 2—4)։

*խուստին թուական կը հաստատէ այն օրը, յորում Հռովմայեցիներու դրօշները Ս. Քաղաքին պարիսպներուն վրայ պիտի բարձրանային։ Հոս—անօրինակ իրողութիւն մը մեր աւետարանական պատմութեանց մէջ— մատենագիրը յանկարծ կ'ընդմիջէ Տիրոջ ճառը իր առանձնայատուկ գրչին սա ազդեցութեամբ. «Որ ընթեռնուն ի միտ առ-*

---

**ՄԱՐԿՈՍ**

*Պետրոս և Անդրէաս*
*Յակոբոս և Յովհաննէս*
*Փիլիպպոս և Բարթողիմէոս*
*ՄԱՏԹԷՈՍ և Թովմաս*
*Յակոբոս Ալփեան և Թադէոս*
*Սիմոն Կանանացի և Յուդա Իսկարիովտացի*

(*Մարկ.* Գ. 17—19)։

**ՂՈՒԿԱՍ**

*Պետրոս և Անդրէաս*
*Յակոբոս և Յովհաննէս*
*Փիլիպպոս և Բարթողիմէոս*
*ՄԱՏԹԷՈՍ և Թովմաս*
*Յակոբոս Ալփեան և Սիմոն Նախանձայոյզ*
*Յուդա (Թադէոս) և Յուդա Իսկարիովտացի*

*Ղուկ.* Զ. 14—16)։

ցէ»։ Այս միջանկեալ խօսքը կ'ապացուցանէ թէ մատենագիրը յայտնուած նշանին կատարուելէն առաջ կը խմբագրէր այս Աւետարանը։ Ի՞նչ բանի ծառայած պիտի ըլլար այս խիստ յուզիչ ազդարարութիւնը եթէ ժամանակն անցած ըլլար։ Պէտք է եզրակացնել ասկէ՝ թէ այս Աւետարանի խմբագրութիւնը և թարգմանութիւնը ա՛յնպիսի ժամանակ մը եղած է, յորում արդէն կը տեսնուէր փոթորիկին մօտենալը, 66 էն քիչ առաջ, յորում պայթեցաւ այն պատերազմը, որ երկար ատենէ ի վեր կ'սպառնար։

Ամփոփելով արտաքին և ներքին կարեւորագոյն վկայութիւնները կրնանք ըսել թէ մեր առաջին Աւետարանը ի սկզբան եբրայական գործ մը եղած է, և այս գրուածքը խմբագրած է Մատթէոս Առաքեալը 60 թուականէն առաջ։ Իսկ ասոր Յունարէն թարգմանութիւնը, որ հաւանականաբար Մատթէոսի աշակերտներէն միոյն ձեռքով եղած է, կրնայ դրուիլ 64 թուականին։

Այս թուականներով կրնայ հասկցուիլ

Աւետարանին իսկական արժէքը։ Աստ-ուածաբանական պաշտօն մը ունէր այն կատարելիք։ Այս էր վերջին խօսքը Եհովային՝ իր հին ժողովրդեան. «Հաւատա՛, եթէ ոչ կը կորսուիս. ճանչցիր Յիսուս Քրիստոս քու Մեսիադ, եթէ ոչ ան պիտի ըլլայ անհեզ դատաւորդ»։ Այս գիրքը որ կը բովանդակէ իր մէջ այդ վսեմ հրաւէրը, Հին Կտակարանի փակումն ու Նորին բացումն է միանգամայն։

Արժանի է որ երկրի վրայ Աստուծոյ Թագաւորութեան սրբարաններուն մէջ իրեն արժանի տեղը գրաւէր։



## Բ. ՄԱՐԿՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԸ

Բոլոր Ս. Հարք միաձայն կը վկայեն թէ Պետրոս Առաքեալին աշակերտն ու թարգմանը երկրորդ Աւետարանին հեղինակը Մարկոս եղած է (Տե՛ս Եւսեբիոս Եկեղ. Պատմ. Գ. 37: Ե. 8: Զ. 46. — Տերտուղիանոս): Մարկոս դեռ Պետրոսի չաշակերտած կ'կարծուի որ թափիչ եղած ըլլայ (Մարկ. Թ. 2): Պետրոս իր թղթին մէջ կը յիշէ Մարկոսը իբրև իր հոգևոր որդին. «Ողջոյն տայ ձեզ որ ի Բաբելոն (*) (յափունս Եփրատայ) ընտրելակիցն Եկեղեցի է և Մարկոս որդի իմ» (Ե. 13): Հաւանականութենէ շատ հեռի չէ նոյնացնել մեր Աւետարանիչը Գործք Առաքելոցի մէջ

(*) Ուր կանուխ ժամանակներէ կը գտնուէին Հրեայ բնակիչք, և Պետրոս հոն Աւետարանելու գնաց, իբր Առաքեալ իր ազգակիցներուն:

յիշուած Մարկոս անուանեալ Յովհաննէսին հետ։ Այս Յովհաննէս-Մարկոսը, Մարիամ անուն Երուսաղէմացի աղնուական տոհմէ բարի կնոջ մը որդին էր, որուն տունը աշակերտներ մա՛նաւանդ և Պետրոս յաճախ այցելութեան կ'երթային ինչպէս և վերջնոյս բանտարկութենէ հրաշքով ազատուելէն ետքը ապաստանարան եղաւ, ուր արդէն հաւատացեալք կ'աղօթէին անոր համար (Գործ. ԺԲ. 12)։ — Մարկոս՝ Բառնաբասի եղբօր որդին (*) էր (Կող. Դ. 14)։ Պօղոսի և Բառնաբասի ընկերացաւ անոնց առաքելական ճամբորդութեան միջոցին, յԱնտիոք և ի Կիպրոս, բայց երբ Պամփիւլիա եկաւ անոնց հետ, թողուց զանոնք և Երուսաղէմ դարձաւ և այս բան պատճառ եղաւ՝ որ Պօղոս չուզեց դէպ ի Փ. Ասիա երկրորդ ճամբորդութեան իրենց հետ առնելու. որով և տխուր գժտութիւն մը ծագեցաւ Մարկոսի ազգականին և Պօղոսի միջև, որու հետեւանքով անոնք բաժնուե-

(*) «Եղբօրորդի» բառին յունարէնը (ἀνεψιός) կրնայ Թարգմանուիլ Թէ մօրաքեռորդի և Թէ մօրեղբօրորդի։

ցան իրարմէ. Բառնաբաս իր Մարկոս ազգականին հետ Կիպրոս գնաց, իսկ Պօղոս՝ Շիղան ընտրեց և Կիլիկիա ու Ասորիք գնաց։

Մարկոս երբ Պամփիւլիայէն զատուեցաւ Պօղոսէն և Բառնաբասէն հաւանականաբար ժամանակ մը Պետրոսի ընկերացաւ Երուսաղէմի մէջ։ Թէև աւելի յետոյ, ինչպէս Պօղոսի թուղթերէն կ'երեւի, Մարկոս կրկին Պօղոսի ընկերացաւ անոր Հռոմ եղած միջոցին։

Մարկոսի գործերուն և մահուանը վրայով որոշ տեղեկութիւններ կը պակսին. միայն վստահելի աւանդութիւն մը Աղեքսանդրիոյ եկեղեցւոյն հաստատութիւնը Մարկոսի կ'ընծայէ. որուն առաջին եպիսկոպոսն եղաւ և ո՛ւր մարտիրոսացաւ, որ հաւանականաբար տեղի ունեցաւ 68 ին՝ Ներոնի թագաւորութեան 14րդ տարին։

Երկրորդ Աւետարանին ծագման և վաւերականութեան մասին երկու հնագոյն և հաստատապէս երաշխաւորուած տեղեկութիւններ ունինք։ Առաջինը Պապիասի վկայութիւնն է, որուն արժէքը աւելի

բարձր է այստեղ. վասն զի իր վկայութիւնը Յիսուսի անմիջական աշակերտ Յովհան երէցէն կ'առնէ։ Երկրորդը Աղեքսանդրացի Կղեմէսին է, որ ժամանակակից էր Երանոսի։

Յովհան երէցը՝ որ ծննդեամբ Պաղեստինացի էր և դաստիարակն էր Պապիասի, սապէս պատմած է անոր՝ մեր երկրորդ Աւետարանին ծագման մասին. «Մարկոս Պետրոսի քարտուղար ըլլալով՝ գրեց ճըշդութեամբ Պետրոսի պատմածին համեմատ ինչ որ Պետրոս ըսած կամ ըրած էր. բայց ոչ այն ժամանակագրական կարգով ինչ կարգով՝ որ Փրկիչը գործած կամ խօսած էր. վասն զի (Մարկոս) անձամբ չէր ունկընդրած Յիսուսի, և ոչ հետեւող եղած էր անոր (*). բայց աշակերտն էր Պետրոսի, սոր պարբերական վարդապետութեան մէջ, որ ըստ տեղւոյ և ժամանակի պահանջմանց չէր կրնար Քրիստոսի ամբողջական կեանքին պատմութիւնն ընել.

(*) Յովհան երէցին վկայութիւնը մինչև հոս է և մնացեալը Պապիասի մէկ բացատրութիւնն է։

Մարկոս պիտի չկրնար կարգաւ գրել Քրիս-տոսի պատմութիւնը. բան մը միայն պիտի կրնար ընել, այն է խնամով պահել, բան մը չպակսեցնել ինչ որ լսած էր, և ոչ ալ աւելցնել կամ փոփոխել» (Եւսեբ. Եկեղ. Պատմ. Գ. 29)։

Երկրորդ տեղեկութիւնը՝ որ Կղեմէնս Աղեքսանդրացւոյն է, կրնայ ամբողջացը-նել Պապիասի վկայութիւնը. «Երբ Պետ-րոս Հռովմայ մէջ Աւետարանը կը քարո-զէր, իր բազմաթիւ ընկերները խնդրեցին Մարկոսէն, որ Պետրոսի երկար ատեն կ'ըն-կերակցէր և գիտէր անոր բոլոր քարոզած-ները, որպէս զի գրի առնէ այդ պատ-մուածները»։ Նոյն Ս. Հայրը կը յաւելու «Մարկոս անոնց խնդրանքին համեմատ Աւետարանը գրեց և յանձնեց անոնց. Պետրոս երբ իմացաւ զայս՝ հաստատեց և թոյլ տուաւ որ հրապարակաւ կարդացուի հաւատացելոց բազմութեան մէջ» (Եւսեբ. Զ. 24. 11. 15)։

Այս երկու վկայութիւններէն կը հե-տեւցնենք թէ Մարկոսի Աւետարանը ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ խմբագրութիւնն ա՛յն

պատմութեանց, զորս կ՚ընէր Պետրոս համդիպած եկեղեցիներուն մէջ Աւետարանը քարոզելով։ Բնականաբար Պետրոս տեղէ տեղ երթալով չէր կրնար Յիսուսի վարդապետութեան չարունակական և ամբողջական ցուցադրութիւնը ընել, ինչպէս ըրած է Մատթէոս իր Աւետարանին մէջ։ Մարկոս՝ Պետրոս առաքեալի աստ անդ խօսածները թէև հետզհետէ կը խմբագրէր, բայց երբ պէտք եղաւ այդ խմբագրած պատմութիւններուն հաւաքածոն ընել, չկրցաւ և չէր կրնար փափաքելի կարգաւ մը գրել. վասն զի ինքն ականատես չէր եղած Քրիստոսի գործերուն և հրաշքներուն։

Մարկոս Հռոմի մէջ, Պետրոսի կենաց վերջին ժամանակներուն 64 ին տարիները — երբ Պետրոս իրօք Հռոմ գացած և հոն մարտիրոսացած է — խմբագրած է իր Աւետարանը։ Եւ ըրաւ ատիկայ Հռովմի եկեղեցւոյն խնդրանքին համեմատ՝ որ երկար ատենէ ի վեր չէր ունկնդրած Պետրոսին։

Արդ՝ եթէ Պապիասի և Կղեմէսի վկայութիւններուն արժէք մը կ՚ընծայենք, պիտի հաւանինք խմբագրուած նկատել մեր

երկրորդ. կանոնական Աւետարանը Հռովմի մէջ, այս քաղաքի քրիստոնեաներուն համար եւ անոնց թախանձանքով, Մարկոսի ձեռքով Պետրոսի թարգմանին եւ ընկերակցին, եւ Պետրոսի բերանացի պատմութեան համաձայն, կրօնական հալածանքներէն քիչ առաջ, որու զոհերէն մին պէտք է եղած ըլլայ Պետրոս։

* * *

Ասոնք արտաքին վկայութիւններ են եւ անշուշտ ամբողջական պիտի չնկատուէին ասոնք՝ եթէ երբէք ներքին վկայութիւններ ու չգային չհաստատէին արտաքին վկայութիւնները։

Եւ նախ եւ առաջ փնտռենք թէ որո՞նք կրնան եղած ըլլալ այն ընթերցողները, որոնց համար գրուած էր այս Աւետարանը։ Առաջին Աւետարանին ընթերցողներուն նման Հրեանե՞ր կամ ծագումով Հրեայ հաւատացեալնե՞ր էին, զորս հարկ էր առաջնորդել Քրիստոսի կամ ամրացնել հաւատքի մէջ։ Հաւանականաբար ոչ. գրեթէ բնաւ. Հին Կտակարանէ կոչումներ չընէր,

ինչ որ հեթանոսներու վիճակին աւելի կը յարմարի, քանի որ անոնք տեղեակ չէին Օրէնքին ու Մարգարէութեան։ Հրէական սովորութեանց մասին երկար բացատրութիւններ տալը աւելորդ պիտի համարուէին՝ եթէ ընթերցողները Հրեայ եղած ըլլային։

Ո՞ւր պէտք էր փնտռել այս ընթերցողները. Փոքր Ասիո՞յ մէջ, Յունաստանի՞ մէջ՝ թէ Իտալիոյ մէջ։ Այս հարցումներուն լուծումը մեզ կը թուին տալ հետեւեալ նշանները։

Հեղինակը մասնաւոր ընտրութիւն մը կ'ընէ ծագումով լատին բառերու. զոր օրինակ, հարիւրապետ նշանակելու համար centourion (=κεντόριον) լատինական բառն է որ կը գործածէ փոխանակ ἑκατοντάρχης յունական բառին (Մարկ. ԺԵ. 29)։

Λεπτὸν որ հրէական դրամ մըն է, արժէքը ցոյց տալու համար չբաղդատեր յունական դբամին տրախմի հետ, այլ հռովմէական դրամի հետ, որ է quadrants = նաքարակիտ։ «Երկու լումայ որ է նաքարակիտ մի» (Մարկ. ԺԲ. 42), եւայլն։

Ապացոյց մը թէ այս գրուածքը չարագրուած է ո՛չ միայն լատին աշխարհի.

մէջ, այլ մասնաւորապէս Հռովմայ եկեղեցւոյն համար, կը գտնուի հաւանականաբար չարչարանաց պատմութեան մէջ: Սիմոն Կիւրենացի, Յիսուսի խաչը տանողը, հոն նշանակուած է իբրև Հայր Աղեքսանդրի եւ Ռուփայ (ԺԵ. 21): Այս յիշատակութիւնը կը բացատրուի սապէս. Սիմոնի երկու որդիքը ծանօթ և մեծարուած էին ընդհանրապէս ա՛յն Եկեղեցիին կողմանէ, որուն համար կը շարագրէր հեղինակը. և արդարև անոր նման բան մը միւս Աւետարաններուն մէջ չգտնուիր: Հետեւաբար՝ եթէ կրնանք հաստատել այդ մարդոց բնակավայրը, պիտի ճանչնանք այն բնակավայրն ալ, որուն կ'ուղղէր հեղինակը: Արդ՝ Պօղոսի առ Հռովմայեցիս թուղթը կը թուի լուծել խնդիրը. «Ողջոյն տաջիք, կը գրէ Պօղոս, Ռուփայ ընտրելոյ ի Տէր և մօր նորա և իմոյ» (Հռովմ. ԺԶ. 13):

Ուրեմն Սիմոնի որդիքը այս ատեն Հռովմ կը բնակէին. հոն գաղթած էին արդէն բաղմաթիւ Հրեաներ այս թուականին: Պօղոս՝ որ Արեւելքի մէջ կը ճանաչէր Սիմոնի որդիքը, կը բարեւէ զանոնք իր

թղթով։ Եւ մեր երկրորդ Աւետարանի հեղինակը, որ գրած վայրկեանին իր աչքերուն առջեւ ունէր անոնց անունները, բնականաբար ստիպեալ կ՚զգար ինքզինքը մեծարելու զանոնք, յիշելով այն անզուգական դերը՝ զոր իրենց հայրը կատարած էր խաչին տուաժին մէջ։ Այս նշանները բատ բաւականին յստակ կ՚երեւին։

Երկրորդ հարցումը սա՛ է. ո՞վ է եղած աղբիւրը Աւետարանի պատմութեան. արդեօք Քրիստոսի թուականէն շատ վերջը յերիւրուած առասպելական աւանդութեան մը արդիւ՞նք են, թէ Յիսուսի պաշտօնէութեան վկաներէն միոյն կենդանի պատմութեամբ պատրաստուած է։

Այս հարցման պատասխանը կը կարծենք տուած ըլլալ՝ նկատի առնել տալով հետեւեալ նշաններն ու պարագաները. Մարկոս իր Աւետարանին մէջ լռութեամբ կ՚անցնի այն ամէն պարագաներուն վրայէն, որոնք Պետրոսի կեանքին փառքը կը կազմեն, ընդհակառակն աւելի լայն տեղ մը կուտայ այն անցքերուն, որոնք Պետրոսի տկարութիւնները կը մատնանշեն եւ

ղայն կը խոնարհեցնեն ։ Բնականաբար Պետրոս Առաքեալ եկեղեցիներու մէջ ըրած պատմութիւններուն մէջ , զորս կը հաւաքէր Մարկոս , Առաքեալը ինքն էր որ լռութեամբ անցաւ ի նպաստ իրեն եղած պարագաներուն վրայէն և Մարկոս չկըրցաւ գիտնալ այն անցքերը , որոնք Պետրոսի արժանիքը կրնային բարձրացնել ։ Այսպէս , զոր օրինակ , Յիսուսի Այլակերպութենէն վեց օր առաջ Պետրոսի հաւատոյ խոստովանութիւնը յիշուած է՝ առանց յիշելու Յիսուսի այն խօսքը , որ Պետրոսի հաւատոյ խոստովանութեան մեծութիւնն ու ճշմարտութիւնը կը յայտնանչէ . «Դու ես Պետրոս , և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ» ։ Մինչդեռ կը յիշուի Պետրոսի անձնասիրական ոգւոյն խստիւ պախարակուած ըլլալը . «Երթ յետս իմ սատանայ , զի ոչ խորհիս դու զԱստուծոյն» ։ (Մարկ . Ը . 27–23) ։

Դարձեալ ուրիշ առթիւ Գալիլիոյ ծովակին վրայ Յիսուսի չրջիլը յիշուած է , բայց զանց առնուած է Պետրոսի հրաշալապէս Յիսուսի հրամանաւ չրջիլը , որ ա-

նոր համար մեծ փառք մըն էր։ Մինչդեռ Մատթէոսի Աւետարանին մէջ կը յիշուի Պետրոսի շրջիլը ծովուն վրայ (Բաղդ. Մարկ. Զ. 50, 51 և Մատթ. ԺԴ. 28–33)։

Պետրոսի ուրացութիւնը որ սեւ էջն է անոր կեանքին, Մարկոսի Աւետարանին մէջ հաւու երկիցս աղաղակութեամբ կը յիշուի, մինչդեռ միւս երեք Աւետարաններուն մէջ միանգամ եւեթ. պարագայ մը՝ որ անոր անկումը աւելի աններելի կ'ընէ (Բաղդ. Մարկ. ԺԴ. 30. 68–73 և Մատթ. ԻԶ. 34. 69–75. Ղուկ. ԻԲ. 34. 47–62. Յովհ. ԺԸ. 17, 27)։

Այս նշանները և պարագաները կրնան ենթադրել տալ* թէ մեր երկրորդ Աւետարանը Պետրոսի դէմ անձնական հակառակորդի մը գործն է. և կամ՝ վերոյիշեալ նշաններէն թերեւս ոմանք հետեւցնեն թէ Պետրոս ինքն է գրքին հեղինակը. — ո՛չ երբեք։

Այս Առաքեալէն ունինք թուղթ մը ընդհանրապէս վաւերական նկատուած, որուն ոճը բնաւ նման չէ՛ մեր Աւետարանի ոճին հետ։ Յետոյ շատ դժուար է կարծել՝

թէ Պետրոս Առաքեալ՝ Գալիլիացի հին ձկնորսը Յովհաննէսի նման մտածող և ուսումնասիրող մը եղած ըլլայ խմբագրելու համար այդպիսի երկար գործ մը։

Ուրեմն եթէ իր պատմութիւններն են, որ ունինք մեր այս Աւետարանին մէջ և որ սակայն իր ձեռքի գործերը չեն, մէկ հնարաւորութիւն մը կը մնայ, այսինքն՝ իր ունկընդիրներէն մէկը կրնայ խմբագրած ըլլալ զայն։ Ո՞վ է այդ անանուն մատենագիրը։

Եթէ Աւանդութիւնը չըսէր մեզ անոր անունը, Պետրոսի առաջին թուղթը մեզ գուշակել պիտի տար զայն։ Առաքեալը հոն կ՚ողջունէ իր որդւոյն Մարկոսի կողմանէ. անշուշտ Որդի բառը հոգեկան իմաստով առնելով։ Յովհաննէս մականուանեալն Մարկոս՝ որդի էր Մարիամ անուն կնոջ մը, որուն տան մէջ Պետրոս այնքան քաջածանօթ էր՝ որ աղախինը առանց իսկ զինքը տեսնելու կը ճանչնար զայն իր ձայնէն (Գործք. ԺԲ, 12—17)։ Բնական է ուրեմն ենթադրել՝ թէ այս Առաքեալն էր որ այդ երիտասարդին սըրտին մէջ ցանեց հաւատոյ սերմը։ Ահա

*տոր համար է՝ որ իր որդին կը կոչէ զայն և այս անուամբ կերպով մը իբր իր հոգեւոր ժառանգ կը համարի զայն, իր այն միակ գանձին, որ է Յիսուս Քրիստոսի, իր Տիրոջ ճանաչողութեան աւանդապահը։ Ուրեմն ուրիշ ոչ ոքի կրնանք ընծայել բստ ամենայնի հաւանականութեան Պետրոսի պատմութեանց խմբագրութիւնը, բայց միայն Մարկոսի։ Եւ երբ միանգամ այս կէտին կը հանինք, ինչպէս չփորձուինք ենթադրել՝ թէ այն երիտասարդ անձը, որուն վրայ խօսուած է Գեթսեմանիի պարտէզին տեսարանին առթիւ և որ խորհրդաւոր դեր մը կը խաղայ, եղած ըլլայ նոյն ինքն Մարկոսը (Մարկ. ԺԴ. 51, 52)։*

*Մեր Աւետարանի խմբագրութեան թըւականը որքան որ բանավարական քննագատներ աշխատած են երրորդ կամ երկրորդ դարու տանիլ, բայց անոնց առարկութիւնները միշտ անհիմն ու անզօր մնացած են և կը մնան ցորչափ վերոյիշեալ նշանները ու պարագաները կը հաստատեն Պետրոսի գործակցին և թարգմանչին գործն եղած ըլլալը, որ հաւանականաբար Երու*

սաղէմի կործանումէն առաջ գրած է։

Մարկոսի Աւետարանը, թէ ըստ վկայութեան Պապիասի և Կղեմէսի և թէ ըստ այն նշաններուն, զոր գտանք գրքով նոյն իսկ մեզ կը ներկայանայ իբր առաւել կամ նուազ ամբողջ հաւաքածոյ մը այն պատմութեան, զոր Պետրոս Առաքեալ կ'ընէր հանդիպած եկեղեցիներուն մէջ։ Այսպէս բաւական չէր Հռոմի Քրիստոնեաներուն լսած ըլլալ Պետրոսի բերանացի քարոզած Աւետարանը, կը փափաքէին ունենալ գրուած յիշատակարան մը, որ պիտի օգնէր անոնց թափանցելու քարոզուած վարդապետութիւններու վեհութեան և իմաստին մէջ և պահելու Փրկչի կեանքին և գործքին յիշատակը։ Այսպիսի գրուածի մը միւսներէն աւելի կը վայելէ Աւետարանական յիշատակարան (*) անունը, որ առաջին ժամանակներուն մէջ տրուած էր մեր Աւետարաններուն։



(*) Յուստինոս վկայ. ՋԱՏԱԳՈՎՈՒԹԻՒՆ։

# Գ. ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԸ



Եկեղեցական պատմութեան տուած տեղեկութիւններու համեմատ՝ Ղուկաս կը համարուի հեղինակը երրորդ կանոնական Աւետարանին և Գործք Առաքելոցի, որ ամբողջացուցիչ պատմութիւնն է առաջինին։

Ղուկ (Luc) կամ Ղուկաս (Lucas) հաւանականաբար կրճատեալ մէկ ձեւն է Ղուկանոսին (Lucanus) ինչպէս որ կը հաստատեն քանի մը ձեռագիրներ ի մէջ այլոց Codex Vercell. և Corbcj.)։ Բայց Λυκανος (Ղուկանոս) անունը յոյն լեզուին մէջ չատ չգտնուելուն, ոմանք կը նախընտրեն ածանցել յունարէն Ղուկիանոս (Lucianus) անունէն որ իր կարգին կ'ածանցի Ղուկիոսէն (Lucius)։

Եկեղեցական պատմիչ Եւսեբիոսի և Հերոնիմոսի վկայութեանց համեմատ Ղուկաս

բնիկ Անտիոքացի յոյն բժիշկ(*) մըն էր։ Այն ատեն Անտիոք հռչակաւոր էր իր բազմամարդութեամբ, իր հարստութեամբ և իր անուանի դպրոցներով, որոնց համբաւը մեծ արձագանք գտած էր ամբողջ Փոքր Ասիոյ մէջ։ — Ղուկաս հաւանականաբար Թէոփիլոս անուն Անտիոքացի նշանաւոր գիտնական բժիշկէն ուսած էր բժշկական ուսումը. երբ լսեց Յիսուսի մեծամեծ, բժշկութիւնները, հետաքրքրուած Պաղեստին գնաց՝ հոն անձամբ տեսնելու և ու-

(*) Այլք կը կարծեն թէ Ղուկաս նկարչական արուեստին ալ հմուտ էր. Նիկեփոր (ԺԴ. դար) կ՚ըսէ թէ «Ղուկաս նկարիչ էր. և թողած է բազմաթիւ նկարներ Յիսուսի և Ս. Աստուածածնի»։ Սակայն Նիկեփոր կը հիմնուի Թէոդորի (508 = Զ. դար) հեղինակութեան վրայ. սոր պատմածին համեմատ որպէս թէ Պողքեր Կայսրուհւոյն՝ Երուսաղէմէն բերին Ղուկասի նկարած Ս. Աստուածածնի պատկերը և նա ալ զայն Նորաշէն Եկեղեցւոյն մէջ դնել տուաւ։ — Բայց սատի նաև նորերումս գտնուեցաւ Հռովմի գետնադամբարաններէն միոյն մէջէն Ս. Կոյսի պատկերին մակագրութիւնը, ո՛ւր ըսուած է թէ Ղուկասի գծած եօթը պատկերներէն մէկն է այն, (Տե՛ս Jac. Assemanni in Calend univ. 180. oct. I, 8. էջ 306. — Roma Subter. III, 4, եւն.)։

սանելու Յիսուսէն բժշկութեան գաղտնիքը։ Այս հետաքրքրութիւնը պատճառ եղաւ իր դարձին, և եղաւ մէկը Յիսուսի հետեւողներէն. Եպիփան Կիպրացի կը դասէ զայն Յիսուսի եօթանասուն աշակերտներու շարքին մէջ (Ընդդէմ Մարկ. Դ. 2)։

Ղուկաս երբ Յիսուսի աշակերտեցաւ՝ հետամուտ եղաւ սկիզբէն կարգաւ գիտնալու Փրկչի կեանքին ստոյգ պատմութիւնը և ատոր համար դիմեց հաւատի աղբիւրներու։ Իր Աւետարանը պատրաստած ատեն, ինչպէս նաև ուրիշ առթիւ, միշտ խորհրդակից ունեցաւ գլխաւորաբար Պօղոս առաքեալը։ Սա ալ փոխադարձաբար Ղուկասն իր առաքելական պաշտօնին ճշմարիտ ընկեր ու գործակից և միանգամայն գաղափարակից ունեցաւ։ Ղուկաս Պօղոսի հետ Հռովմ գնաց և անոր մարտիրոսութենէն ետքը ինքն Աւետարանը քարոզելու համար յաջորդաբար այցելեց Իտալիա, Դաղմատիա, Եգիպտոս, Լիբիա և Թեբայիա եւայլն և մեռաւ մարտիրոսական մահուամբ Աքայիոյ մէջ՝ ինչպէս որ կը հաւաստէ Գրիգոր Նազիանզացի։

Երրորդ Աւետարանին ծագման և վաւերականութեան մասին արդէն Աւետարանին նշանաւոր յառաջաբանին մէջ (Ա. 1–4) բոլոր անհրաժեշտ տեղեկութիւնները տրուած ըլլալով՝ եկեղեցական Ս. Հարց երաշխաւորուած վկայութիւններն ալ կուգան լուսաբանելու զանոնք։ Այս վկայութիւններու մէջ առաջին տեղը պէտք է տանք Երանոսի վկայութեան։

Երանոս, որ ապրած է Աւետարաններու հրատարակուելէն ոչ աւելի քան հարիւր տար ետքը, Աւետարաններու վրայ շատ կարեւոր վկայութիւններ տուած ատեն՝ Ղուկասու Աւետարանին համար ալ կ'ըսէ. «Ղուկաս, ընկեր Պօղոսի, գրեց Աւետարանն ըստ քարոզութեան Պօղոսի։» (Ընդ. Հերետ. Գ. 2)։

Մուրատորեան հատուածն(*), որ գրեթէ

(*) Այս անունը կը տրուի ձեռագիր մագաղաթի մը, որ ցանկ մըն է Նոր Կտակարանի գրքերուն և զոր գտաւ Մուրատորի անուն իտալացի բանասէր մը (1672—1750) Միլանի Ամբրոսեան գրատան մէջ։ Մուրատորի ճանչնալով անոր հնութեան նշանները հրատարակեց «Իտալական Հնութիւնք» կոչուած հաւաքածոյին մէջ. (Anti-

միեւնոյն թուականին կը կարծուի գրուած ըլլալ (170 թուականին), հետեւեալ տողերը ունի Ղուկասու վերաբերութեամբ. «Երրորդաբար Ղուկասու Աւետարանը. Ղուկաս բժիշկը իր Պօղոս ընկերակցին աշխատակցութեամբ գրեց Աւետարանը։» Antiquités Italiennes, t. III)։

Կղեմէս Աղեքսանդրացի (+200), արժանաւոր յաջորդը Աղեքսանդրիոյ Դպրոցին Հիմնադրին՝ Պանդենոսի, կը վկայէ թէ «Մարկոսի և Յովհաննէսի Աւետարաններէն առաջ ազգաբանութիւն պարունակող Աւետարանները (Մատթէոս և Ղուկաս) գրուեցան»։ Ըստ այս վկայութեան Աւետարանչաց կարգը կը փոխուի։

Տերտուղիանոս, Աֆրիկեան Եկեղեցւոյ ականաւոր Ս. Հայրը (Բրդ դար) իր Կանխագրութիւն Հերետիկոսաց գրքին մէջ

---

quités Italiennes, Հատ. III. էջ 854)։ Սոյն մագաղաթին մէջ գրուած է թէ «Հերմաս հովիւ մեր օրով գրեց, մինչ անոր եղբայրը Պիոս Ա. Հռովմայ Եկեղեցւոյն Հայրապետն էր։» Պատմութենէն գիտենք թէ Պիոս Ա. վախճանեցաւ 150 ին, ուստի և այս մագաղաթը կը վերանայ մինչև Բրդ դար։

Մարկիոնեանց մասին խօսելու ատեն կ'ըսէ թէ Մարկիոն և իր հետեւորդք Աւետարաններուն մէջէն միայն Ղուկասու Աւետարանը կ'ընդունին, ինչպէս նաև Պօղոսի թուղթերէն մէկ քանին. կը յաւելու թէ Մարկիոնեանք՝ Ղուկասու Աւետարանը Պօղոսի օժանդակութեամբ գրուած կը համարին. Մարկիոն այս Աւետարանին առաջին երկու գլուխները, որք կը պարունակեն Յիսուսի ծննդեան և մանկութեան պատմութիւնը, ջնջած է՝ իբր անվաւեր։ (ՏԵՐՏՈՒՂԻԱՆՈՍ, Վասն Կանխագրութեան Հերետիկոսաց Գլ.. 51)։

Հերոնիմոս՝ Լատին Ս. Հայրերէն մէկը՝ (Դրդ դարու վերջը) կ'ըսէ, թէ Ղուկասու Աւետարանը լրումն ու ամփոփումը կը համարուի առաջիններուն. «Ղուկաս, Ասորի բժիշկը, ընիկ Անտիոքացի էր, և ընկերը՝ Պօղոս առաքեալին, իր գիրքը խմբագրեց Աքայիոյ մէջ։ Ղուկաս թաղուեցաւ Կ. Պոլսոյ մէջ, ուր բերած էին իր աճիւնը Անդրէաս առաքեալին աճիւնին հետ, Կոստասի թագաւորութեան 20րդ տարին։

Կեղսոս և Տատիանոս, առաջինը՝ երկ-

բորդ դարու մեծահռչակ հեթանոս փիլի-սոփայ, իսկ երկրորդը՝ նախ աշակերտ Ս. Յուստինոսի և ապա հերետիկոս և հեղինակ Diatessaron (ըստ չորից) կոչուած Համա-բարբառ Աւետարանին, տեսած ըլլալով այս Աւետարանը իրենց քննութեան առած են։

Դարձեալ Բրդ դարէն սկսեալ Եկեղեց-ւոյ Հայրերը և հերետիկոսները ինչ ինչ պարագաներու առթիւ վկայութեան կոչած են Ղուկասու Աւետարանին այլ և այլ հա-մարներ, այսպէս զոր օրինակ.

Ս. Յուստինոս վկայն (103—167) իր ընդդէմ Տրիփոնի Հրէի գրած գրքին մէջ վկայութեան կը բերէ Ղուկասու Ա. 38 համարը և Յարութեան պատմութեան առթիւ կը յիշէ ամբողջովին Ի. 34—ԻԲ. 32. մասը։

Գնոստիկեան աղանդաւոր Թէոդոտոս իր գրուածներու մէջ վկայութեան կը կոչէ Ղուկասու հետեւեալ համարները Ա, 35., Բ. 24., ԺԱ, 22., ԺԴ, 16—23., ԺԵ, 11—23., ԺԶ, 19։

Գնոստիկեան աղանդաւոր Հերակլիոն, ըստ Կղեմէս Աղեքսանդրացւոյ (Օծոյք.

4, 9.) վկայութեան կը կոչէ Ղուկաս ժԲ. 8 համարը։

Այս արտաքին տեղեկութիւններէն և վկայութիւններէն կրնանք հետեւցնել՝ թէ Ղուկաս Աւետարանը Աքայիոյ (այժմ Փաղրաս) մէջ չարադրուած է Մարկոսինէն քիչ առաջ հետեւաբար 60 և 64 թուականներու մէջ, նոյն այն թուականին, ուր խմբագրուեցաւ և թարգմանուեցաւ Մատթէոսի Աւետարանը։ Ղուկաս և Պօղոսի միմեանց գործակցութիւնը պատճառ եղած է՝ որ մի և նոյն ներշնչումներով գրեն. ակնյայտնի կ'երեւի աղերս մը անոնց սկըզբունքներու և վարդապետութեան մէջ համագոյն այն աղերսին, զոր հաստատեցինք Երկրորդ Աւետարանչի՝ Մարկոսի և Պետրոսի պաշտօնակցութեան միջև։

* * *

Մոռնանք այժմ Աւետարանիս ծագման և վաւերականութեան մասին եղած արտաքին տեղեկութիւններն ու վկայութիւնները և ուսումնասիրենք Աւետարանը, իր էջերուն մէջ փնտռելու հեղինակին ան-

*ձին, խմբագրութեան նպատակին, եղանակին և թուականին հետքերը։ Եւ անշուշտ արտաքին վկայութիւնները ամբողջական պիտի չնկատուէին, եթէ երբեք ներքին վկայութիւններ ալ չգային չհաստատէին զանոնք։*

*Նախ քննենք թէ ո՞վ է Աւետարանիս հեղինակը։ Եթէ աւանդութիւնը լռէր Աւետարանիս հեղինակին մասին, պիտի կըրնայինք հետեւեալ նշաններով գտնել զայն։*

*Անտարակոյս այս Աւետարանին և Գործք Առաքելոցի հեղինակը նոյն անձն է.* (renan. Vie de Jésus. *էջ* 16.17). *Գործք Առաքելոցէն որոշ կը տեսնուի՝ որ այդ գրքին հեղինակը Պօղոսի ճանապարհորդակիցներէն մէկն է. վասն զի այլ և այլ պարագաներու մէջ «մեք» ձեւը կը գործածէ* (*Գործք. ԺԶ,* 11—16. *ԻԱ,* 1.2 *եւն.*)։ *Եթէ Պօղոսի ընկերներէն մէկն է Գործոցի հեղինակը՝, հետեւաբար Գործք Առաքելոցի մէջ յանուանէ յիշատակուած և նշանակուած անձերէն — Տիմոթէոս, Բառնաբաս, Սիղուանոս, Տիւքիկոս, ևայլք — չե՛ն կրնար եղած ըլլալ, քանի որ անոնք*

Գիրք դէմքի անձնաւորութիւններ յիշուած են․ այլ միայն Ղուկաս կրնար եղած ըլլալ, ինչպէս որ Պօղոսի թուղթերէն բացորոշ կը տեսնենք՝ որ նա ալ ընկերացած էր Պօղոսի դէպ ի Հռոմ ճամբորդութեանը (Բ. Տիմ. Դ, 10. Փիլիմ. 24. Կող. Դ. 14)։ Եւ երբ անգամ մը կը հաստատուի՝ թէ Ղուկասն է Գործոց հեղինակը, շատ դիւրութեամբ կրնայ ապացուցուիլ և հաստատուիլ թէ Աւետարանին հեղինակն ալ նոյն ինքն Ղուկասն է. վասն զի —

Նախ և առաջ կը տեսնենք՝ որ Աւետարանը Գործք Առաքելոցին պէս ուղղուած է Թէոփիլոս (*) (= Բարեկամ Աստուծոյ) անուն ականաւոր անձի մը, որոյ Κράτιστος (= Քաջ, պատուական) տիտղոսը կուտայ. թէև հրեաններն ալ գործածած են այս անունը, սակայն բառը իր յունական ծագումով ենթադրել կուտայ թէ Անտիոքացի յոյն մը եղած ըլլայ ա՛ն,

(*) Κράτιστε Θεόφιλε (= Քաջ, պատուական բարեկամ Աստուծոյ) կոչականը ոմանք հասարակ անուն կարծելով կ'ենթադրեն թէ գիրքը նուիրուած է այն հեթանոսներուն, որոնք Աստուծոյ բարեկամներն էին։

*որ Ղուկասու համար ակնածելի ու պաշտելի անձ մըն էր և թերևս իր վարպետը։*

*Երկրորդ՝ լեզուին այն նոյնութիւնը, որ կայ երկուքին մէջ, առանց ո և է առարկութեան ենթադրել կուտայ թէ նոյն է երկուքին ալ հեղինակը։*

*Երրորդ՝ Աւետարանի պատմութիւնը կը վերջանայ ճիշդ այն տեղ, ուսկից կ՚սկսի Գործք Առաքելոցը.*

*Չորրորդ՝ թէ Աւետարանին մէջ և թէ Գործոցի մէջ յաճախ կը հանդիպինք բժըշկական բացատրութեանց, ինչ որ ենթադրել կուտայ թէ երկուքին ալ հեղինակը նոյն գիտական անձն է* (Πυρετῷ μεγάλῳ Դ. 38. Εκλυς. Գործք. ԺԳ. 11. եւն.։)

*Հեղինակին խմբագրութեան նպատակը եղած է Յիսուսը, ներկայացնել Փրկիչ մարդկութեան. այս նպատակը վեր բերող և Աւետարանը յատկանշող կէտերէն ոմանք յիշենք.*

*Ղուկաս մասնաւորապէս ինքն է՝ որ կը յիշէ Բեթլեհեմի հովիւներուն երեւցող հրեշտակաց փառաբանական երգը, ո՛ւր Աստուծոյ բարեացակամութիւնը կ՚երեւի ո՛չ թէ Հրեաներուն, այլ դէպ ի մարդկու-*

թիւն «և յերկիր խաղաղութիւն ի մարդիկ հաճութիւն», ուր կ'երևի փրկութեան Տիեզերական հանգամանքը ։

Ղուկաս է միայն՝ որ Յիսուսի ազգաբանութիւնը ոչ թէ Մատթէոսի պէս Հրէից ազգահայրէն՝ Աբրահամէն՝ կ'սկսի, այլ նախահայր Ադամէն ցուցունելու համար թէ Յիսուս աշխարհի մեսիան միայն հրեաներուն հետ չէ որ առնչութիւն ունի ազգաբանական տեսակէտով, այլ ամբողջ մարդկութեան հետ. քանի որ Անիկա որդին ալ է Ադամի, ամբողջ մարդկութեան ։

Դարձեալ Ղուկաս է՝ որ կը յիշատակէ Յիսուսի այն առակները գլխաւորաբար — (Կորուսեալ ոչխարին, Կորուսեալ դրամին, Անառակ Որդւոյն, Մաքսաւորին ևն.) — որք բացայայտ կը մատնանշեն աստուածային ա՛յն գթութեան դուռը, որ ընդհանուր մարդկութեան բացուած է Յիսուսի փրկագործութեամբ ։

Գալով խմբագրութեան եղանակին արդէն Ղուկաս իր յառաջաբանին մէջ կ'ըսէ՝ թէ ի՛նչ կերպով պատրաստած է իր Աւետարանը. «Քանզի բազումք յօժարեցին

վերստին կարգել զպատմութիւն վասն իրացն հաստատելոյ ի մեզ, որպէս աւանդեցին մեզ՝ որ ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն բանին, կամ եղև և ինձ, որք ի ս՛կզբանէ զհետ երթալ էի ամենայնի ճշմարտութեամբ կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ, Զի ծանեցես զբանիցն որոց աշակերտեցար՝ զճշմարտութիւն» (Ա. 1—4)։

Կրնանք այս յառաջաբանէն հետեւցնել՝ թէ պատմութիւնը քաղած է ականատեսներու և բանին սպասաւոր եղողներու աւանդած բազում գրուածներէն և հետեւարար բնական էր՝ որ Ղուկաս իր պատմութեան ամբողջութեան մէջ պիտի չկըրնար գնել ոճի կատարեալ նոյնութիւն։ Արդարև Ա. Աւետարանին յառաջաբանը՝ որ բուն իսկ Ղուկասինն է՝ հիանալի, մաքուր դասական յոյն լեզուաւ գրուած է։ Այս ոճը Գործոց գրքին վերջին գլուխներուն մէջ կրնանք մէկ մըն ալ չարունակելի տեսնել. իսկ Ա. 5 համարէն մինչև Ցիսուսի պատանեկութեան պատմութիւնը ընտանեկան լեզուաւ և բացատրութեամբ գրուած է. (Տե՛ս Guérike, Introd. au N. Test.)։

Յայտնի էր որ Ղուկաս՝ Ս. Կոյս Մարիամէն քաղելով Յիսուսի մանկութեան և պատանեկութեան տեղեկութիւնները անոր ընտանեկան կեանքին բացատրութիւնները չուզեց պանց ընել: Աւետարանի մնացեալ ինչ ինչ մասերուն, ինչպէս նաև Գործք Առաքելոցի առաջին մասերուն մէջ առաւել կամ նուազ Արամէական լեզուի ոճը կը տիրէ: Ոճի այդ պէսպիսութիւնը ուրիշ կերպ չենք կրնար բացատրել՝ բայց միայն սա կերպով՝ որ արամէական ոճով գրուած մասերն, Ղուկասու վկայութեամբ իսկ, ասկից անկից քաղած է ստոյգը փնտռելով. իսկ այն մասերը, որ մաքուր յունական ոճ մը ունին՝ անշուշտ իր ականատես եղած դէպքերն են որ իրեն սեփական լեզուաւ կը գրէ. զոր օրինակ Էմմաուսի ճամբուն վրայ Յիսուսի երևիլը և խօսակցութիւնը (ԻԴ. 13—35) նաև (ԻԴ. 36—49):

Պօղոսի և Ղուկասու գործակցութիւնը և գաղափարակցութիւնը ակնայայտնի կ'երևի Պօղոսի Թուղթերուն և Ղուկասու Աւետարանին մէջ. այսպէս, զոր օրինակ, կատարեալ համաձայնութիւն մը կայ Պօ-

ղօսի պատմած Ս. Հաղորդութեան հաստատութեան պատմութեան (Ա. Կորնթ. ԺԱ) և Ղուկաս Աւետարանին այդ առթիւ ըրած պատմութեան մէջ (ԻԲ. 19)։ Նաև Պօղոս Առաքեալի սա յիշատակութիւնը «Քանզի ասէ գիր, արժանի է մըշակն վարձու իւրոյ» (Ա. Տիմ. Ե. 18) թէև կը գտնուի բառ իմաստին Մատթէոսի մէջ (Ժ. 10), բայց բնագրականը և բառ առ բառը Ղուկասու մէջ միայն կը գտնենք (Ժ. 7)։ Բաց ասոր Յարուցեալ Յիսուսի երեւումներու մասին Ղուկասու ԺԴ. գըլխուն պատմուածներուն և Պօղոսի առ Կորընթացիս գրած առաջին թուղթին ԺԵ. գլխուն մէջ թուարկումներուն միջև կը գտնենք կատարեալ աղերս մը։

Կը մնայ այժմ մեզ գիտնալ թէ Ղուկաս իր Աւետարանը ո՞ր թուականին գրած կըրնայ ըլլալ. — Նախ որ չկրնար գրած ըլլալ 50 թուականէն առաջ, որ ատեն ընկերացաւ Պօղոսի. ո՛չ ալ 67 թուականէն վերջ, որ Պօղոսի նահատակութեան թըւականն է. վասն զի Գործք Առաքելոցի մէջ (ԻԸ, 20. 21) չէ՛ պատմուած Պօղոսի

նահատակութիւնը և ո՛չ ալ ո և է ան-
նարկութիւն եղած է այս մասին. պարա-
գայ մը՝ որ ենթադրել կուտայ թէ երբ
Ղուկաս վերջացուց և հրատարակեց իր
պատմութիւնը դեռ Պօղոս նահատակուած
չէր։

Արդի քննադատներէն ոմանք յենլով
Ղուկասու Երուսաղէմի կործանման և աշ-
խարհի վախճանի գուշակութեան միջև յի-
շատակած ժամանակամիջոցին վրայ, որ
Աւետարանիչը կը կոչէ «ժամանակք հեթա-
նոսաց», կը պնդեն՝ թէ Աւետարանի խըմ-
բագրութիւնը տեղի ունեցած ըլլայ (ԻԱ.
24) Երուսաղէմի կործանումէն քիչ ետքը
72—80 տարիներու միջև։ — Բայց այս տե-
սութիւնն ալ իր արժէքը կը կորսնցնէ.
քանի որ Երուսաղէմի կործանման մար-
գարէութեան, մօտ չկայ ո՛ և է ակնարկու-
թիւն դէպքին կատարման մասին. և եթէ
կործանումը կատարուած ըլլար, ինչ հարկ
կար՝ որ Ղուկաս Յիսուսի այդ խօսքերը
մէջ բերէր. վասն զի ըստ ինքեան աննը-
պատակ պիտի ըլլային։

Ղուկաս Աւետարանիչ միայն է խմբա-

գիրներուն մէջ՝ որ ջանացած է պատկերացնել Յիսուսի պատմութեան գլխաւոր դէպքերը և ա՛յնքան ճոխ ու հրաշալի դրչի դարձուածներով երանգներ դնել ու ցոլացնել Յիսուսի խօսքերուն ու գործքերուն։ Կ'արժէ որ ամէն ատեն միւսներուն հետ միշտ մեր աչքերուն առջև ունենանք մարդկութեան Փրկչին փառքը ու փրկագործութիւնը տեսնելու և Անոր ուժաւորող և կենսաբեր խօսքերը լսելու համար։



# ԵՐԵՔ ԽՄԲԱԳԻՐ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒ ԻՐԱՐՈՒ ՀԵՏ ՈՒՆԵՑԱԾ ԱՂԵՐՍԸ



Երեք խմբագիր Աւետարաններու ուրոյն ծագումն ու վաւերականութիւնը ուսումնասիրելէ յետոյ՝ մեր ուշադրութիւնը կը գրաւէ անոնց միջեւ գտնուած խիստ նշանակելի և անձուկ նմանութեան աղերսը։ Կը տեսնենք, իրենց ամբողջութեան մէջ, յաճախ միեւնոյն չարայարութիւնը, միեւնոյն ընդլայնումը և ինչ ինչ պարագաներու մէջ ալ տառական նմանութիւն մը, բացատրութեանց ձեւերու և եղանակներու նմանութիւններ. աղերս մը՝ որ չատերուն ենթադրել կուտայ՝ թէ իրարմէ օգտուած կամ իրարմէ օրինակած են կամ թէ հետեւած են իրենց առջեւ գտնուած նախնական օրինակի մը, բնագրի մը։

Ամէնէն աւելի ուշագրաւը, Մարկոսի Աւետարանին միւս երկու Աւետարաննե-

րուն հետ ունեցած՝ ամենաանձուկ և զարմանալի աղերսն է ։ Մարկոսի Աւետարանին, քան երեք համարներէն զատ, ամէն մէկ մասերն նոյնութեամբ միւս երկու Աւետարաններուն կամ միոյն և կամ միւսին և կամ երկուքին մէջ ևս կան ։

Բայց միւս կողմանէ այս ակն յանդիման նմանութիւններու մօտ կը հանդիպինք նաև խիստ նշանակելի տարբերութիւններու. ոչ միայն աւետարանիչներէն իւրաքանչիւրը յաւելուածներ կ՚ընէ, որք չեն գտնուիր միւսներուն մէջ, այլ աւելի կը տարբերին յաճախ կարգով, և պարագաներու զանազան մանրամասնութիւններու մէջ ։ Միեւնոյն իրողութիւնը կամ պարագան մէջ կը բերուի մէկուն կողմէն աւելի ընդլայնեալ, միւսէն աւելի համառօտութեամբ. մին ուշագրաւ պարագայ մը կը յիշէ, միւսը զանց կ՚ընէ ։

Եթէ նմանութիւններէն հետևցնենք թէ իրարմէ օրինակած են, ի՞նչ պէտք է ըսել այն կէտերուն համար, որ յատկանշական տարբերութիւններով կը ներկայանան ։ Ի՞նչպէս բացատրել պէտք է պատ-

*ճառը և ծագումը այս աղերսներուն և տարբերութիւններուն ։ Ահա դժուար խընդիր մը՝ որ վերջերս խիստ հետաքրքրեց և յուզեց Գերման Աստուածաբանական Դպրոցներն և անոր տուաւ հոյլ մը կարծիքներու, զորս կրնանք ամփոփել հետեւեալ երեք գլուխներով ։*

ԱՌԱՋԻՆ ԿԱՐԾԻՔ. — Նախնական Աւետարան մը աղբիւր եղած է երեք խըմբագիր Աւետարաններու ։ *Այս ենթադրութիւնը առաջին անգամ Սէմլըր* (=Semler) *յառաջադրեց ։ Սմիթ և այլք իբր աղբիւր ծառայող նախնական Աւետարանը Նազարեաններու Մատթէոսի ընծայած Արամական Աւետարանը կը կարծեն որ ըլլայ ։ Վէպըր, Թիէս, Եայլը, կ'ենթադրեն աղբիւրը անվաւեր Աւետարան մը, թերեւս Եբրայական Աւետարանը ։ Վերջապէս Հերտըր, Իքորն և Մարշ կ'ենթադրեն թէ աղբիւրը Արամական կամ Ասորա-Քաղդէական Աւետարան մը եղած ըլլայ, որ յետոյ կորսուած է ։*

*Գ. Մարշ՝ նշանաւոր Անգղիացի աստուածաբանը՝ հետեւեալ տեսութիւնը կ'ընէ*

Աւետարանները ծագման վրայ, որ իբր հնաքրքրական և ոչ ընդունելի տեսութիւն մը մէջ կը բերենք։

1. Ի սկզբան Առաքելոց ձեռամբ խըմբագրուած Արամական լեզուաւ նախնական Աւետարան մը միայն կար։

2. Յետոյ այս Արամական Աւետարանին Յունարէն թարգմանութիւնն եղաւ։

3. Մատթէոս առաջին անգամ պէտք տեսաւ փոփոխութիւններ և սրբագրութիւններ ներմուծել։

4. Յետոյ Մատթէոսի սրբագրած Աւետարանը Յունարէնի թարգմանուեցաւ նախնական Աւետարանին յունական թարգմանութեան հետ բաղդատուելով։

5. Ղուկաս գրեց Աւետարանը քննութեան առնելով Արամական լեզուաւ գըրուած սկզբնական Աւետարանը։

6. Ապա Մարկոս գրեց Աւետարան մը բաղդատելով Մատթէոսի և Ղուկասու Աւետարանները։

7. Յետոյ այսՄատթէոսի սրբագրած Աւետա րանը Յունարէն թարգմանութեան և նախապէս Արամական լեզուաւ գրուած

Աւետարաններու բաղդատութեան մը պէտք տեսնուած և յաւելումներ կրած է ։

8. Վերջնոյս Յունարէն թարգմանութիւնը կ'ըլլայ ։

9. Մարկոսի Աւետարանը իր վերջնական ձեւը կը գտնէ յաւելումներով և փոփոխումներով ։

10. Ղուկասու Աւետարանը եւս իր վերջնական ձեւը կ'առնէ յաւելումներով և բաղդատութիւններով ։

Այս տեսութիւնը՝ որ բնականաբար երկար աշխատութեան մը արդիւնք եղած է , դժբախտաբար չունի իր մէջ կռուան մը գլխաւոր և հաստատուն՝ այլ միայն մտացածին կարծիքներու շարք մըն է՝ որ կ'ուրանայ միանգամայն Աւետարանաց աստուածային հեղինակութիւնը ։ Այս տեսութիւնը չենք կրնար լուրջ քննութեան մը արդիւնք համարել , վասնզի ի՞նչպէս կ'ըլլայ՝ որ Առաքելական հեղինակութենէ եկած գիրք մը , որ անշուշտ լայն տեղ մը կը գրաւէր հաւատացեալ սրտին մէջ , կրնայ յաւելումներ և յապաւումներ կրել ։

Գ. Մարչի Աւետարաններուն տուած

*վերջնական ձեւերը բացատրելու եղանակը շատ տարօրինակ կը գտնենք, և այն աստիճան բազմակնճիռ և նոյնքան տարբեր վարկածներ ու ենթադրութիւններ, որ չենք կրնար հասկնալ թէ ողջամիտ մարդ մը ի՞նչպէս կրնայ փոփոխել իրերը և ենթադրել գրաքաղութիւններ այն գրուածներու մէջ, ո՛ւր գեղեցկօրէն և ա՛յն յայտնի կ'երեւի բնական ինքնատպութիւնը։*

**ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԾԻՔ. — Երեք խմբագիր Աւետարաններէն մէկը նախնական եղած է եւ միւսները հետեւած են առաջինին:** *Քննադատները չե՛ն կրցած որոշել թէ ո՞րն է եղած նախնական Աւետարանը։ Ոմանք, որոնց մէջ են Կրոտիոս, Միլ, Վիթզէյն, Հուք, կ'ըսեն թէ Աւետարաններէն նախնականը Մատթէոսինը եղած է, և Մարկոս՝ Մատթէոսի Աւետարանին պատմութիւնները հետեւողաբար ամփոփած է, և Ղուկաս ալ Մատթէոսի և Մարկոսի Աւետարանները աչքի առջև ունենալով գրած է իր Աւետարանը։*

*Այլք, Կրիսպախ, Ցոն Ամմոն, Սօնիէ,*

Թիէլէ, կ՚ըսեն՝ թէ նախ Մատթէոս գրած է, եւ Ղուկաս իր առջեւ ունենալով Մատթէոսի Աւետարանը՝ յաւելուածներով եւ անձնական յիշատակներով ճոխացուցած է զայն, եւ երբ Մարկոս գլխաւոր դէպքերն քաղած է Մատթէոսի եւ Ղուկասու Աւետարաններէն եւ գրած է իր համառօտ Աւետարանը։

Ուրիշներ, Սթոռ, Վէյս, Վիլք, Բրունօ, Պաւլուր, կ՚ըսեն՝ թէ Աւետարաններու նախնականը Մարկոսինը եղած է եւ Մատթէոս եւ Ղուկաս Մարկոսի Աւետարանը իրենց առջեւ ունենալով, իրենց գիտցածներն ալ աւելցուցած եւ պատրաստած են իրենց Աւետարանները։

Ոմանք ալ Բուշինք եւ Վօկել, կ՚ըսեն՝ թէ նախնական Աւետարանը Ղուկասու Աւետարանն է. Մարկոս եւ Մատթէոս իրենց Աւետարանը գրած են յապաւելով կամ յաւելլով Ղուկասու Աւետարանը։

Եթէ ընդունինք՝ թէ Աւետարանիչները իրարմէ ընդօրինակած են, ինչպէս պէտք է մեկնել այն անկախութիւնը եւ տարբերութիւնները, որք մինչեւ իսկ հակասու-

*թեան կ'իրթան. ի՞նչպէս պէտք է լուծել այն գրեթէ նոյնանման շարքերուն քով իրողութեանց փոխադրութիւնները, յապաւումները կամ յաւելումները, որք տարօրինակ անվստահութիւն մը ենթադրել կուտան իր նախորդին պատմութեան վերաբերմամբ։ Եթէ վերջին երկու աւետարանիչները չէին գիտեր Յիսուսի պատմութիւնը և հետեւեցան առաջինին, ինչո՞ւ երբեմն տեղ տեղ բառ առ բառ կը հետեւին և տեղ տեղ ալ կարեւոր կէտերու մէջ կը տարբերին։*

*Կը տեսնենք թէ այս երկրորդ կարծիքն ալ բոլորովին չունի ամուր կռուան մը՝ հաստատելու համար թէ աւետարանիչներ իրարմէ օրինակած ըլլան։*

**ԵՐՐՈՐԴ ԿԱՐԾԻՔ. —** Երբ Աւետարաններու աղբիւր եղած է առաքելական բերանացի աւանդութիւնը: *Այս կարծիքը պաշտպանեցին Հերտըր, Էքէրմանն, Գէյ-ձըր, Կիզըլէր, որք այնքան լաւ կերպով լուսաբանած և լուծած են Աւետարանաց միմեանց նկատմամբ ունեցած աղերսին գաղտնիքը և կնճիռը։*

Անոնք կ'ըսեն՝ թէ Յիսուսի ժամանակ Հրէից գրականութիւնը շատ աղքատ էր, բոլորովին անծանօթ էր բազմագրութիւնը (polygraphie). Ս. Գիրքերը իրենց համար բաւական էր. Ռաբբիներու գիտութիւնը նոր երկեր գրելու և պատրաստելու մէջ չէր կայանար, այլ կը կայանար Ս. Գիրքերը բերանացի լուսաբանելու և բացատրելու մէջ։ Ղուկաս Գործք Առաքելոցի մէջ մանաւորապէս կը յիշատակէ Առաքելոց վարդապետութիւնը (Բ. 42). այս կը նշանակէ անշուշտ Առաքելոց ո՛չ վկայութիւնը, զոր կուտային Յիսուսի համար և ո՛չ պատմութիւնը, զոր անոր գլխաւոր պատահարներէն առնելով կ'ընէին։ Անոր գործած հրաշքները, խօսած առակները, չարչարանքը, յարութիւնը, անոնք կը կազմէին գլխաւոր նիւթն իրենց քարոզութեան։ Այս պատմութիւնները կրկնուելէն և կրկնուածները լսուելէն Առաքեալներու մտքին մէջ կազմուեցան անփոփոխ և հաստատատիպ պատմութիւններ, ուր ոչ միայն իրենց հիմը, այլ բացատրութիւններու եղանակները, նոյնիսկ պահուեցան ամէնուն

բեմին մէջ։ Առաքելոց բերանացի վարդապետութիւնները, աւանդութիւնը, պարագաները ստիպման տակ Աւետարանիչներու ձեռքով գրի առնուեցան ճիշդ այնպէս, ինչպէս յաճախակի կը կրկնուէին առաքեալներէն և հաւատացեալներէն։ Այսպէս հաստատուն ձև մը ստացան բերանացի վարդապետութիւնները և գրի առնուած ատեն պէսպիսութիւններ սպրդեցան. և բնական էր այս և յառաջ կուգար այն՝ պատմողին անհատականութենէն և անձնական յիշատակներու զանազանութենէն։

Այս կերպով միայն կրնանք բացատրել այն ներդաշնակութիւնը և նոյնութիւնը Աւետարաններու մէջ, ինչպէս նաև նշանակելի ա՛յն տարբերութիւնները, որք ցոյց կուտան իրենց հեղինակներուն յատուկ անհատականութիւնը։



# Դ. ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԸ

Աւետարաններու պատմութեանց համեմատ Յովհաննէս Աւետարանիչ Զեբեդիայի որդին էր. Գալիլիոյ ծովակին վրայ ձըկնորսութիւն կ'ընէր իր հօրը և եղբօրը հետ և ամենայն հաւանականութեամբ Բեթսայիդացի էր. Պետրոսի և Անդրէասի հայրենակից, որոնց ընկեր ալ էր։ Իր մայրը Սողոմէ կը պատկանէր այն Գալիլիացի բարեպաշտ ու երկիւղած կանանց խումբին, որք հետեւեցան Յիսուսի մինչև վերջը (Մարկ. ԺԶ, 40. ԺԶ)։ Յովհաննէսի եղբայրն էր Յակոբոս Երէց, որ Նահատակուած է 44 Թուականին Հերովդէս Ագրիպպասի ձեռքով և Առաջին Մարտիրոս Առաքեալն եղած է (Գործք ԺԲ. 2) և գլխատուած ըլլալուն համար կը կոչուի Գլխադիր:

Ձկնորսութեան արհեստը Գեննեսարէթի

*ձկնաւէտ ծովակին վրայ, այն ատեն ո՛չ այնքան արհամարհելի և ոչ ալ չահաւէտ էր։ Եթէ նկատողութեան առնուի թէ Զեբեդիա իր ղաւակներէն անկախ կրնար վարձկան ծառաներով աշխատիլ (Մարկ. Ա.* 20)*, թէ Սողոմէ՝ Զեբեդիայի կինը, այն բարեպաշտ կիներէն էր որ կը հետեւէին Յիսուսի ճամբորդութեան ատեն և կ'օգնէին իրենց միջոցներով Անոր (Ղուկ. Է.* 3)*, թէ Փրկչին մահուանէն ետքը անոնք էին, որ բերին խունկ զնա պատելու (Մարկ. ԻԷ.* 56)*, թէ Յովհաննէս՝ Կայիափա Քահանայապետին հետ մօտէն ծանօթութիւն ունէր (Յովհ. ԺԸ.* 15, 16)*, և թէ Յիսուս իր մահամերձ վայրկեանին իր մայրը Յովհաննէսին յանձնեց (Յովհ. ԺԹ.* 26)*, այս բոլոր պարագաները ենթադրել կուտան թէ ըստ ամենայն հաւանութեան, Զեբեդեան ընտանիքը, չըսենք հարուստ, բաւական բարեկեցիկ ընտանիք մ'էին և գոնէ կրնային ունեցած ըլլալ բաւական ստացուածք։*

*Անվաւեր Աւետարաններուն համաձայն, Յովհաննու ծնողքը ազգականական կապ*

մը ունէին Փրկչին հետ, որով և կը բացատրուի թէ ի՞նչպէս Սողոմէ համարձակեցաւ փառասիրական առաջարկութիւն մը ընել Յիսուսի, և թէ ինչո՞ւ Յիսուս իր մայրն յանձնեց Յովհաննէսի ։

Յովհաննէս Յիսուսի աշակերտելէ առաջ Յովհաննէս Մկրտչի աշակերտած է ։ Նա իր վարդապետին խօսքին վրայ — «Սա է գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի» — հետեւեցաւ Յիսուսի՝ Անդրէասին հետ (Յովհ. Ա. 37)։ Մէկ տարի ետքը իր Յակոբոս եղբօրը հետ Առաքելական պաշտօնի կոչուեցաւ (Մատթ. Դ. 21)․ անոնք իրենց արհեստը բոլորովին թողուցին երբ ականատես եղան հրաշալի ձրկնորսութեան և ալ անկից ետքը ամէն տեղ հետեւեցան Յիսուսի (Ղուկ. Ե. 11)։

Յովհաննէս սկիզբէն Առաքելոց ընկերութեան մէջ ուշադրաւ տեղ մը բռնեց․ Նա կը կազմէր Յակոբոսի և Սիմոն Պետրոսի հետ Յիսուսի մտերմական շրջանը ։ Իրենք էին միայն՝ որ Յայրոսի աղջկան յարութեան և Թափորի վրայ Յիսուսի այլակերպութեան ականատես եղան․ իրենք

էին դարձեալ՝ որ կ՚ընկերանային Յիսուսի Գեթսեմանիի պարտէզին մէջ։ Յովհաննէս ինքզինքը կը կոչէ պարզմտութեամբ «աշակերտն, զոր սիրէին Յիսուս». (Յովհ. ԺԳ.), իր գլուխը հանգչեցուց Յիսուսի կուրծքին վրայ՝ ընթրեաց սեղանի ատեն։

Յովհաննէս փոխադարձ սիրով մը վերաբերուեցաւ մինչև վերջ իր Տիրոջ. Անոր չարչարանաց վայրկեանին կը տեսնենք թէ միայն Յովհաննէսն է՝ որ Պիղատոսի ապարանքին մէջ կ՚երևի անվեհեր. կը գտնենք ապա զինքն սուրբ կանանց և Յիսուսի մօր հետ խաչին առջև։

Հոգեգալուստէն անմիջապէս ետքը Յովհաննէս եռանդեամբ Բանին Կենաց Քարոզութեան սկսաւ. կը տեսնենք զինքը Պետրոսին հետ՝ որ յանուն Յիսուսի կը բժշկէ կաղ մը Տաճարին դրան առջև (Գործք Գ. 5). դարձեալ Պետրոսին հետ Սամարիա կ՚այցելէ, նա, մէկ խօսքով, Յակոբոսի և Պետրոսի հետ մէկն էր այն երեք սիւներէն, որոնցմով կը բարձրանար Աստուծոյ տունը (Գաղ. Բ. 9). — Ձենք գիտեր ճըշգըրտօրէն թէ ո՛րքան ատեն մնաց Առա-

քելական պաշտօնով Պաղեստինի մէջ։ Ահա դիտենք՝ որ 50 թուականին, Պօղոս Առաքեալ երբ Երուսաղէմ եկաւ, իր Առաքելական պաշտօնի կիրառման մասին խորհըրդակցութիւն մը ունենալու՝ Յովհաննէս այն ատեն հոն կը գտնուէր (Գաղ. Բ. 9). բայց քանի մը տարիներ յետոյ երբ նորէն եկաւ (Գործք Ի. 18), կ'երեւի թէ չգտաւ զայն հոն. Նա թողած էր Պաղեստինը և Փոքր Ասիոյ մէջ մանաւորապէս Եփեսոսի մէջ, Առաքելական պաշտօնով կը մնար և կ'երեւի թէ ընդհանուր վերադիտող էր բոլոր Փոքր Ասիոյ Եպիսկոպոսաց։ (Յայտ. Ա. 1. 4)։

Յովհաննէս զերծ չմնաց առաջին հալածանքներէն ու Տերտուղիանոսի (Կանխագրութիւն. Կ. 36), Օգոստինոսի և Հերոնիմոսի վկայութեանց համեմատ ձերբակալուեցաւ Ասիոյ Փոխ-Հիւպատոսի հրամանաւ և Հռոմ տարուեցաւ, հոն սոսկալի տանջանքներու ենթարկուելու և անկից ալ վտարուեցաւ Պատմոս, Արշիպելագոսի կղզիներէն մին, ուր Յայտնութեան գիրքը գրեց ըստ Ներոնոսի։

Ս. Հարք համաձայն չեն Յովհաննէսի Պատմոս վտարուելու ճիշդ թուականին մասին։ Միայն ամենայն հաւանականութեամբ կրնայ ընդունուիլ Ներոնի և Դոմետիանոսի իշխանութեան առեն։ Վերջինն՝ Երանոս կը նշանակէ. հեղինակութիւն մը, որուն վրայ կը հիմնուի և Եւսեբիոս (Ժամանակագրութիւն. Տարի 94 — Եկեղ. Պատմ. Գ. 18)։ Դոմետիանոսի հալածանքը, որ սկսաւ 95ին, երկար չտևեց. քիչ յետոյ, Ներվայի թագաւորութեան օրով Յովհաննէս կրցաւ Եփեսոս դառնալ ու հոն մեռաւ 100 թուականին՝ խոր ծերութեան մէջ. Եպիփանի բանին նայելով 94 տարեկան, իսկ ըստ Ոսկեբերանի՝ 108 տարեկան։

Յովհաննէս իր գրածներուն մէջ կը փայլի այնպիսի գեղեցիկ, աննմանելի, ամենասիրելի հոգիով մը, որ միայն Արարչին ձեռքէն կրնայ ելլել։ Կը տեսնուի որ անոր սիրտը բռնկած է այն աստուածային կրակով, որ ծագեցաւ իր Փրկչին՝ Յիսուսի՝ կուրծքէն. իր թուղթերուն մէջ ամէն կողմ ներշնչած է Սիրոյ Հոգին. Սէր առ Աստուած, Սէր առ Յիսուս, սէր առ մար-

դիկ, սէր առ եղբայրս. և ատոր համար է՝ որ կոչուած է Սիրոյ Առաքեալ:

Հերոնիմոս կը պատմէ թէ Յովհաննէս իր կենաց վախճանին մօտերը ծերութեան պատճառաւ երբ այլեւս կարող չէր երկարօրէն ժողովրդեան քարոզելու, եկեղեցի կը տանէին զինքը և հոն ի լուր ժողովրդեան կը կրկնէր սա խօսքերը «Սիրելի զաւակներս, սիրեցէք, միմեանս» իր աշակերտները հարցուցին թէ ինչո՞ւ համար միշտ միեւնոյն բանը կը կրկնէր, պատասխանեց թէ «Ասիկա Տիրոջ մեծ պատուիրն է եւ երբ ասիկա կատարէք, ամէն բան կատարած կ'ըլլաք»:

Յիսուս՝ Յովհաննէսի և Յակոբոսի ԲԱՆԵՐԵԳԵՍ=Որդիք Որոտման, անունը տըւած է (Մարկ. Գ. 17) հաւանաբար իրենց այն անխորհուրդ եռանդին համար, որով անգամ մը խնդրեցին Յիսուսէ Սամարացւոց վրայ կրակ իջեցնել (Ղուկ. Թ. 54): Ահա ոգի մը վրէժխնդրութեան՝ որ ետքը սիրոյ, Աստուածային սիրոյ փոխուեցաւ:

*
* *

Աւետարանի ծագման և վաւերակա-նութեան մասին ունինք Ս. Հարց վկայու-թիւնները, որոնց մէջ առաջին տեղը կը-նանք տալ Երանոսի վկայութեան և Մու-րադորեան հատուածին։

Երանոս՝ Աշակերտ Պողիկարպոսի, Աշա-կերտին Յովհաննու Առաքելոյն, հետեւ-եալը կը գրէ «Հուսկ յետոյ Յովհաննէս, աշակերտ Յիսուսի, մինչդեռ Եփեսոս էր, հրատարակեց իր Աւետարանը», (Ընդդէմ. Հերես. Գ. 1)։ Իր գրութեան մէջ շատ ան-գամներ Յովհաննու Աւետարանէն կոչում-ներ կ՚ընէ։ Երանոսի սոյն վկայութիւնը աննման վկայութիւն մը կը համարուի մեկ-նաբաններէն և վճռական պատասխան մը Ջորրորդ Աւետարանի վաւերականու-թեան հաստատման ի նպաստ։ Երանոս, ուսեալ, փորձառու գրող մըն էր. եկեղե-ցական գործոց մէջ մեծ բաժին մը ունե-նեցած և մեծ դեր խաղացած և ազդե-ցութիւն ունեցած է բոլոր եկեղեցեաց վրայ։ Մանկութեան ատեն Պողիկարպոս զինքը քրիստոնէական կրօնի մէջ կրթած է. կրնայ մակաբերուիլ թէ այսպիսի քաղ-

մարդիկն ականաւոր Եկեղեցական Հօր առաջնորդութեան տակ Երանոս կրնար առոյգ տեղեկութիւններ քաղած ըլլալ Աւետարանաց մասին ալ. և այն տեղեկութիւնները՝ որ կը քաղենք իրմէ անշուշտ ինքն ալ քաղած է Պողիկարպոսէն։

Լուձելպերկեր (Lutzelberger) փորձեց Երանոսի վերոյիշեալ զօրաւոր վկայութիւնը տկարացնել՝ առարկելով թէ «Երանոս երբ ճանչցաւ Պողիկարպոսը, դեռ այն ատեն մանուկ մըն էր (Παῖς ὢν ἔτι). արդ այսպիսի պարագայի մը մէջ ի՞նչ կ'արժէ տղու մը վկայութիւնը»։ — Անոր կը պատասխանենք թէ պէտք չէ մանուկ (παῖς ὢν = բէ՛ս օ՛ն) բառը «6—10 տարեկան տղայ» նշանակութեամբ առնել, այլ «մատաղահասակ պատանի 12—16 տարեկան», իմաստով ինչպէս որ իր պատմութեանը այլ և այլ պարագաներն ալ կը հաստատեն թէ Երանոսի իմացականութիւնը հասած՝ կրնար հասկնալ և ըմբռնել ծերունի Պողիկարպոսի ճառերը։ Եթէ Լուձելպերկի դիտողութիւնը ընդունինք, այն ատեն ի՛նչպէս կարելի է երեւակայել՝ որ ծերունի Պողի-

կարպոս խելք դնէր 6—10 տարեկան տղումը և առջին առնէր ու անոր խօսէր Աւետարաններու ծագման և վաւերականութեան մասին ու Յիսուսի խօսքերը ու գործքերը պատմէր։

**Մուրադորեան հատուածին** մէջ, որունկատմամբ արդէն ուրիշ առթիւ խօսած ենք, հետեւեալ տեղեկութիւնները կը գըտնենք չորրորդ Աւետարանի մասին. «Չորրորդ աւետարանը Յովհաննէսինն է։ Յովհաննէս իր աշակերտակիցներէն և իր եպիսկոպոսակիցներէն թելադրուած կ'ըսէ անոնց. «Ծո՛մ պահեցէք ինծի հետ այս երեք օրերը և իրարու պիտի հաղորդենք ինչ որ յայտնուի մեզմէ»։ Հետեւեալ իրիկունը Առաքեալներէն միայն Անդրէասին յայտնուեցաւ՝ որ Յովհաննէս պէտք էր գրէր ամէն ինչ, և միւս ամէնքն ալ պէտք էին հաւաստել անոր գրածը։ Զարմանալու ի՞նչ բան կայ ուրեմն երբ Յովհաննէս իր վրայ խօսելով կ'ըսէ իր թուղթերուն մէջ. ինչ որ տեսանք մեր աչքերով, ինչ որ լսեցինք մեր ականջներով և ինչ որ շօշափեցինք մեր ձեռքերով, այն է որ կը յայտնենք ձեզ։

Ասով ինքզինքը ոչ միայն ականատես և ականջալուր վկայ՝ այլ նաև մատենագիր կը յայտարարէ Տիրոջ ամբողջ հրաշալի գործոցն։ Այս հատուածին մէջ Անդրէասի խաղացած դերը նշանակելի է։

Կղեմէս Աղեքսանդրացի, որ Աղեքսանդրեան դպրոցի (189ին) պետն եղաւ։ Առաքելոց անմիջական աշակերտներն կը ճանչնար, և տեղեկութիւններ քաղած էր Աւետարաններու վաւերականութեան մասին, իր ՕԹՈՑՔ անուն Գ. Գիրքին 465 էջին մէջ կը պնդէ՝ թէ «Յովհաննէս. վերջինն, տեղի տալով իր բարեկամաց թախանձանքին, հրատարակեց Աւետարանը իր անուամբ»(Տե՛ս ԵԻՍԵԲԻՈՍ Եկեղ. Պատմ. Զ.14)։

Տերտուղիանոս՝ Երանոսի ժամանակակից՝ Աւետարանաց մասին բացայայտ տեղեկութիւններ տուած ատեն Յովհաննու Աւետարանի մասին ալ կ՚ըսէ թէ Վաղենտինոս Գնոստիկեան աղանդաւորն կ՚ընդունէր միայն Յովհաննու Աւետարանը իր ամբողջութեան մէջ. և որուն աշակերտն Հերակլիոն ամբողջ մեկնութիւն մը գրած է սոյն Աւետարանի վրայ։

Բանաւարական (rationaliste) քննադատներ՝ Գրէնոբր, Լուձելպերկեր, Ռընան, Շթրաուս, Պաուր, Աւետարաններու հեղինակութեան և վաւերականութեան մասին խօսելու առթիւ Չորրորդ Աւետարանի հեղինակն Յովհաննէսը ըլլալուն բացարձակ տարակոյս կը յայտնեն՝ ըսելով թէ Չորրորդ Աւետարանը եթէ Յովհաննէսու գրած ըլլար և կամ այդ Աւետարանը վաւերական եղած ըլլար՝ պէտք է որ յիշած ըլլային Արդ և Բրդ դարու առաջին կիսուն սրբազան մատենագիրները, զոր օրինակ Իգնատիոս Անտիոքացի, Պօղիկարպոս, Յովհաննէսի աշակերտն, Պապիաս։

Այս առարկութիւնն առաջին առթիւ ջախջախիչ հարուած մը պիտի համարուէր Չորրորդ Աւետարանի վաւերականութեան մասին՝ եթէ չգիտնայինք թէ յիշեալ Ս. Հայրերն իրենց գրուածներու մէջ՝ որ Ս. Եկեղեցին կ՚ընդունի իբրև ուղղափառ գրուածներ, Յովհաննու Աւետարանին այլ և այլ մասերը յիշատակած են ուղղակի կերպով. և բացայայտ կ՚երևի թէ Յովհաննու Աւետարանին ազդեցութիւնը ա-

տաւել կամ նուազ հետքեր թողուցած է անոնց գրուածներու մէջ, թէև այս ազդեցութիւնը աւելի ակներեւ կը տեսնուի մէկին յիշատակութիւններով Գնոստիկեան աղանդաւորներու գրուածներու մէջ, որպէս են Վաղենտինոսի, Հերակլիոնի, Մարկիոնի:

Յիշենք սոսա այն ուղղափառ գրուածները կամ երկասիրութիւնները, որոնց մէջ Յովհաննու Աւետարանի ազդեցութեան տաւել կամ նուազ հետքերն կ'երեւին:

1. Բառնաբասի Թուղթին ԺԲրդ Գըլխուն մէջ յիշուած կը գտնենք Յովհաննու Գրդ Գլխուն 14 համարը. «Զի որպէս Մովսէս բարձրացոյց զօձն յանապատի՝ նոյնպէս բարձրանալ պարտ է Որդւոյ Մարդոյ»:

2. Իգնատիոս Անտիոքացի իր առ Հռովմայեցիս ուղղեալ թուղթին մէջ (Գլ. Է.), որ ստուգապէս վաւերական թուղթերէն կը համարուի, բացայայտ ակնարկութիւններով կը յիշատակէ Յովհաննու Զ. Գըլխուն 32, 33, 45, 51, 58 համարները:

3. Պօղիկարպոս ևս իր Փիլիպեցւոց ուղղեալ Թուղթին մէջ (Գլ. Է.), ակն-

յայտնի ակնարկութիւն մը կ'ընէ Յովհաննու Ա. Թուղթին Դ. 2, 3 համարներուն։

4. Պապիաս ետ (140) իրաւ թէեւ չյիշատակեր Յովհաննու Աւետարանը, բայց չյիշատակելէն, ի լռութենէ, չենք կրնար ո՛ և է բան ապացուցանել։ Մանաւանդ որ Եւսեբիոսի, վկայութեան համեմատ Պապիաս կը յիշատակէ Յովհաննու Թուղթերը. և մի՞թէ ասկից չկրնա՞ր հետեւցուիլ՝ թէ Չորրորդ Աւետարանն ալ այն ատեն գոյութիւն ունէր և Յովհաննէսինն էր, քանի որ Թուղթերուն և Աւետարանին ոճը տարբերութիւն չունին. ամէնէն ռամիկն ալ երբ կարդայ, այնքան բացայայտ է Թուղթերուն և Աւետարանին բացատրութեանց և ոճերու նմանութիւնները, որ պիտի կըրնայ դիւրութեամբ հետեւցնել՝ որ երկուքին ալ հեղինակը նոյն է։

Չորրորդ Աւետարանի ներքին ուսումնասիրութեամբը միայն կրնանք ըսել՝ թէ թէ ո՞ր աստիճան կարելի է վստահիլ Եկեղեցական Պատմութեան մեր հայթայթած վերոյիշեալ հաւաստարաններուն։

Այն եկեղեցիները, որոնց համար սահ-

մանուած է այս Աւետարանը, հեթանոս աշխարհի կը պատկանէին։ Վասն զի հեղինակը ո՛չ միայն կ'ուզէ ի վեր հանել բոլորովին մասնաւոր եղանակով մը Հելլէններու դէպքը Յիսուսի պաշտօնէութեանը մէջ (Է. 35. ԺԲ. 20), այլ նաև բացատրութիւններ կուտայ Հրեայ բարքերու վրայ (Բ. 6. Դ. 9. ԺԹ. 40) և երկու անգամ եբրայական Մեսիա բառը կը թարգմանէ Յունարէն Քրիստոս բառով (Ա. 41. Դ. 25)։

Վերջապէս Փոքր Ասիոյ և ոչ թէ բուն Յունաստանի մէջ պէտք է փնտռել այս Յոյները։ Վասն զի Ասիոյ մէջ աւելի տարածուած էին այն վարդապետութիւնները՝ որոնց կ'ակնարկէ Աւետարանիչը իր յառաջաբանին մէջ, երբ կը հրաւիրէ իր ընթերցողները տեսնելու ի Յիսուս աստուածային բանին (լո՛գոս) յայտնութիւնը։ Նոյնպէս այս երկիրներու եկեղեցիներուն համար է՝ որ Պօղոս առաքեալ Եփեսացւոց և Կողոսացւոց թուղթերուն մէջ, աւելի մասնաւոր կերպով ցուցադրած է Քրիստոսի անձին աստուածութիւնը. վասն զի Եկեղեցւոյ այս սահմաններուն մէջ էր՝ որ արդէն

սկսած էին յուզուիլ այս մասին մանուածապատ խնդիրներ։ Ուստի ամենայն հաւանականութեամբ մեր Աւետարանը Փոքր Ասիոյ եկեղեցիներուն համար սահմանուած էր։

Աւետարանիչը իր Աւետարանին Ի րդ գլխուն 30, 31 համարներով յայտնապէս կ'ըսէ Աւետարանին գրուելուն շարժառիթը, բուն նպատակը. «Այլ այս այնչափ ինչ գրեցաւ, զի հաւատացէք եթէ Յիսուս՝ Քրիստոս է, Որդի Աստուծոյ. և զի հաւատայցէք և զկեանսն յաւիտենականս ընդունիցիք յանուն նորա»։

Յովհաննէսի համար բաւական չէին երեւար արդէն իսկ ծանօթացուած և տարածուած երեք Խմբագիր Աւետարանները։ Ամբողջացնելիք կէտեր կը գտնէր միւս Աւետարաններուն մէջ. պէտք էր այդ պակասները լրացնել. լրացնել նաև այն պակաս թողուած ճառերը, զորս Յիսուս խօսած էր Երուսաղէմի մէջ իր աստուածային անձին իբր վկայութիւններ (*)։ Նաև պահած է

---

(*) Զատկի տօնին (Գլ. Բ.) Նիկոդիմոսի հետ վերըստին ծննդեան վրայ խօսակցութիւն. — Փուրիմի տօնին

յիշատակը այն ժողովրդական քարոզութիւններու և ընտանեկան խօսակցութիւններու, որոնք կատարուած էին երբ Յիսուս Գալիլիոյ աւաններուն և գիւղերուն մէջ կը շրջէր։ Կարեւոր էր, ուրեմն, պահել Եկեղեցւոյ համար այն գանձերը, որոնք բոլորովին կորսուելու վտանգին մէջ էին, արձանագրել անջնջելի կերպով մը Քրիստոսի այն խօսքերը այնպէս, ինչպէս խորապէս քանդակուած էին սիրեցեալ աշակերտին սրտին մէջ։ Այն ատեն միայն ամէն հաւատացեալ Թովմասի պէս պիտի առաջնորդուէր յուզուած չեշտերով ըսելու սա կատարեալ դաւանութիւնը, որ և վերջին խօսքն է չորրորդ Աւետարանին, «Տէր իմ և Աստուած իմ»։

Այս է մեր Աւետարանին դրական նպատակը։ Եւ ասով միեւնոյն ժամանակ, Հեղինակը անուղղակի կերպով թօթափել կուտայ բոլոր նոյն մոլութիւնները Յիսուսի

---

(Գլ. Ե.) իր Հօր հետ ունեցած յարաբերութեան վրայ ճառ. — Տաղաւարահարաց տօնին (Գլ. Է.) կենդանի ջուրին աղբիւրին վրայ ճառ. — Նաւակատիքի տօնին (Գլ. Ի.( «Ես եւ Հայր» բնաբանին վրայ ճառ։

անձին նկատմամբ, որ սկսած էին յառաջ գալ Փոքր Ասիոյ մէջ, ինչպէս Յովհաննէս Մկրտչի աշակերտներուն, Սապեան կոչուածներու մոլորութիւնը, որոնք իրենց վարդապետը Յիսուսէն բարձր կը բռնէին Եպիոնեանցը, որոնք զՅիսուս կը նկատէին պարզապէս որդին Յովսէփայ և Մարեմայ, որ հասած էր Մեսիական արժանիքին. Կերինթոսի վարդապետութիւնը, որով Յիսուս առաջ մարդ կը նկատուէր, որուն միացած էր իր կեանքին մէջ պահուն երկնային Քրիստոսը: Երեւութականք կոչուած հերետիկոսներունը, որոնք կը պընդէին՝ թէ Քրիստոսի մարմինը պարզ երեւոյթ մը ունէր միայն: Բոլոր այս սխալ վարդապետութիւնները կը քանդուէին սա խօսքին առջև, որուն ապացուցումն է մեր Աւետարանն իր ամբողջութեամբ. «ԵՒ ԲԱՆՆ ՄԱՐՄԻՆ ԵՂԵՒ»: Աստուածային կենաց կատարելութիւնը իրականացաւ մարդկային տկարութեան ձեւին տակ. անհունին և հունաւորին միջև գտնուած անդունդը գործնականապէս լեցուեցաւ, և փիլիսոփաներու այն բանը (լո՛գոս), զոր

իրենց հայեցողութեան ամպերուն մէջէն միայն կ՚ընդնշմարէին, հաւատքին համար եղաւ զննելի, ծանօթ և յայտնի էակ մը։ Այս Աւետարանով Յիսուս եղաւ պատմութեան Յիսուսը, որ է կատարելապէս մարդկային և կատարելապէս աստուածային էակ մը։

Ոմանք կը պնդեն՝ թէ Յովհաննու պատկերացուցած Յիսուսը իրապէս մարդկային էակ մը չէր։ Բոլորովին կը սխալին այնպիսիները։ Եթէ կայ ճշմարիտ մարդու որդի մը, չորրորդ աւետարանի Յիսուսն է այն։ Յոգնութենէ նեղուած կը նստի Նա Յակոբի Ջրհորին մօտ (Դ. 6). կ՚զգածուի տեսնելով՝ որ իր բարեկամները կուլան (ԺԱ. 33—35). ինքն իսկ կուլայ իր բարեկամին գերեզմանին առջև. Հոգին կը խռովի մտածելով իր մօտաւոր չարչարանքներուն վրայ (ԺԲ. 27)։ Յովհաննու Յիսուսը տեղ տեղ իբր մարդ կը ներկայանայ։

Կրնա՞նք արդեօք Աւետարանի գրքին ուսումնասիրութեամբ գտնել Հեղինակին անձը, Հեղինակին ո՞վ ըլլալը։ Աւետարանի Ա. 14 համարին մէջ Հեղինակը կ՚ըսէ

«Եւ տեսաք զփառս նորա», հետեւաբար ինքզինքը Յիսուսի կենաց ականատես վկայներէն մէկը կը նկատէ. և եթէ կարելի ըլլայ կասկածիլ այս տեսանել բառին տառական իմաստին վրայ, մեր կասկածը կրնան փարատել հեղինակին սա խօսքերը. «Եւ որ տեսն՝ վկայեաց, եւ ճշմարիտ է վկայութիւն նորա», և նոյն հեղինակին Ա. Թուղթին սա յառաջաբանը «... զորմէ լուաքն, որում ականատես իսկ եղեաք, ընդ որ հայեցաքն, և ձեռք մեր շօշափեցին, ի վերայ բանին կենաց, պատմեմք և ձեզ» (Ա. Յովհ. Ա. 1—3): Կամ այսպէս խօսողը խաբեբայ մըն է, և կամ իր պատմածներուն ինքն իսկ է վկայ: Արդ դիւրին չէ մարդկային գրչէ մը ելած ամենասուրբ գործը նկատել երկար ստապատիր խաբեբայական գործ մը:

Հեղինակը, ինչպէս կ'երեւի ակնյայտնի Յիսուսի սիրած աշակերտը միայն կրնայ ըլլալ. այս աշակերտը յաճախ յիշատակուած է Աւետարանիս պատմութեան մէջ առանց իր անունը դրուելու: Հեղինակը առանց աչառութեան կ'անուանէ միւս բոլոր առաք-

ծաղկներու անունները։ Իսկ երբ կարգը իրեն կուգայ «աշակերտն զոր սիրեր Յիսուս» կ'անուանէ։

Վերջապէս հեղինակը Զեբեդիայի որդիներէն մէկը կրնայ ըլլալ միայն. Հեղինակին Զեբեդիայի որդիներէն մէկը եղած ըլլալը երեւան կուգայ ԻԱ. 2 համարէն. եթէ ԻԱ. գլխոյն այդ պատմութիւնը հեղինակին գրչին արդիւնքը չէ իսկ, ամէն պարագայի մէջ գէթ իր կողմանէ հաղորդուած աւանդութենէ մըն է այն։ Այդ համարին մէջ, Զեբեդիայի որդիքը միւս յիշուած առաքեալներէն (Սիմոն պետրոս, Թովմաս, Նաթանայէլ) վերջը դրուած են. և գիտենք՝ թէ բոլոր առաքելական ցանկերուն մէջ Յովհաննէս և Յակոբոս շարունակ Երկոտասանից գլուխը դրուած են Պետրոսի և Անդրէասի հետ։ Նշանակութիւն ունեցող կէտ մը կայ հոս, այն է՝ թէ այս պատմութիւնը այն երկուքէն (Զեբեդեայ որդիներէն) մէկը գրած է. ուրիշ խօսքով Յովհաննէս գրած է. վասն զի Յակոբոս, Զեբեդեայ միւս որդին, կանուխէն մեռած ըլլալով (Գործ.ք. ԺԲ. 2), չէ

կարելի անոր ընծայել այս Աւետարանը։

Գրքին ուսումնասիրութեան այս արդիւնքը կը հաստատուի Աւետարանիս վերջը գտնուած նշանաւոր վկայութեամբ։ ԻԱ. գլխոյն 24 և 25 համարները հեղինակին գրչէն չեն կրնար ելած ըլլալ արդարեւ։ «Գիտեմք» յոգնակի ձեւը (համար 24), կ'ապացուցանէ՝ թէ միջարկութիւն մըն է այն, աւելցուած այն վստահելի անձերուն կողմանէ, որոնք անձնապէս կը ճանչնային հեղինակը և որոնց յանձնած էր հեղինակը իր գործը, զայն ի դէպ ժամանակի Եկեղեցւոյն աւանդելու համար։

Անտարակոյս սոյնք այն առաքեալներն ու եպիսկոպոսներն էին, որոնց վրայ խօսուած է վերը յիշուած Մուրատորիի հատուածին մէկ կտորին մէջ, և որոնք թախանձած են Առաքեալին շարադրելու համար այդ գրուածքը։ Եզակի բառը, «կարծեմ» ԻԱ. 25 համարին մէջ՝ մասնաւորապէս կը վերաբերի անոնցմէ մէկուն, որ ամէնուն կողմանէ կը գրէր և կ'ստորագրէր։ Եկեղեցւոյ ծանօթ այս անձնաւորութիւններն են՝ որ կը յայտարարեն հոս հրա-

պարակսու թէ այս Աւետարանը Յիսուսի սիրած աշակերտին գործն է, որն որ տակաւին կենդանի էր այն ժամանակ՝ ուր այս վկայութիւնը կուտային անոնք իր գործին։

Այս Աւետարանի ծագման վրայ բոլորովին տարբեր բացատրութիւն մը աւելի անլուծանելի խնդիրներ կը յարուցանէ. ըսել՝ թէ հեղինակը Յովհաննէսը չէ, այլ Յովհաննէսի դպրոցին վերաբերող անձ մը, որ լաւ ճանչցած և սերտած է Յովհաննէսը, և անոր քաղած էր իր պատմութիւնը, այդ կը նշանակէ՝ թէ Աւետարանը չեն քններ լիապէս արտաքին և ներքին հաւաստի ապացոյցներով։ Եթէ երկրորդ դարու մէջ, Յովհաննու դպրոցին մէջ պէտք է փնտռել այն հիանալի ճառերը շարադրող և վսեմ տեսարանները նկարագրող հեղինակը՝ պէտք է ըլլայ այն կարող սրբազան մատենագիրներէն՝ որոնց ոմանց գրուածքներն ալ ունինք. ասոնք են Իգնատիոս Անտիոքացի, Պօղիկարպոս Զմիւռնացի, Պապիաս, Յուստինոս ևլն։ Արդ եթէ ասոնց գրուածքներն բաղդատենք Չորրորդ Աւե-

տարանին հետ, այս Ս. Հարց գրուածք-
ները որքան չատ վա՞ր կը մնան մեր Աւե-
տարանին վսեմութենէն ու բարձրութենէն.
թէև իրրև առաջնակարգ մեծ աստղեր
փայլած էին նոյն ժամանակին եկեղեցւոյ
երկնակամարին վրայ։

Ուրեմն իրաւունք ունինք, եթէ նոյն
այդ գրուածքին վերաբերմամբ աւանդու-
թիւն մը չըլլար, եզրակացնել ըսելով Գեր-
մանացի քննադատի մը հետ. «Լեզուին
հանգամանքը, պատմութեան կենդանու-
թիւնը և աշխուժութիւնը, տուեալներու
ճշդութիւնը ու ճշգրտաբանութիւնը, այն
մանաւոր եղանակը, որով յիշատակուած
են Յիսուսի Նախակարապետը և Զեբեդիայ
որդիքը, Յիսուսի անձին նկատմամբ մա-
տենագրին ունեցած սէրը, եռանդագին
գորովը, աւետարանական պատմութեան
վրայ իր պատմութեամբ տարածուած ան-
դիմադրելի հրապոյրը..., այս ամէնը դէպ
ի այն համոզումը կը տանին մեզ՝ թէ այդ-
պիսի Աւետարանի մը հեղինակ կրնայ ըլ-
լալ Գալիլեացի մը միայն, ականատես
վկայ մը, առաքեալ մը, Յիսուսի սիրեց-

եալ այն Յովհաննէսը՝ որ իր գլուխը Յիսուսի կուրծքին վրայ հանգչեցուց և որ մօտ կեցած էր անոր խաչին. այն Յովհաննէսը, զոր Եփեսոսի մէջ օր մը ի վիճակի պիտի գտնէր կատարելու այդպիսի Աւետարան մը գրելու պարտականութիւնը՝ իրենց գրական մշակութեամբ նշանաւոր յոյն ընթերցողներու համար»:

Աւետարաններու մէջ այս Չորրորդ Աւետարանը, որ ամէն տեսակէտներով կը գերազանցէ նախկին երեք Աւետարաններէն իւրաքանչիւրը, ենթարկուած է ամէնէն աւելի քննադատութեան ուժգին հարուածներուն: Բայց փա՛ռք Բարձրելոյն, այս Աւետարանի հակառակորդներէն շատեր այժմ յետս կոչած են իրենց անհեթեթ, սխալ քննադատութիւնները և ճանչցած են անոր վաւերականութիւնը: Երանի՜ թէ մեր մէջ ալ Աւետարանս յաճախակի ընթերցմամբ գտնէր մեծարանք ու յարգանք և տեսնէինք անոր մէջ Փրկչին աստուածութիւնը և կապուէինք հաւատքով Աստուծոյ Որդւոյն:



# ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ



ՅԻՍՈՒՍ իր երկրաւոր ընտանիքին թողած բոլոր հարստութիւնը այս չորս Աւետարաններն են ։ Ասոնք բաւական են Եկեղեցւոյն համար. վասն զի զանոնք տեսնելով՝ Եկեղեցին հոգւոյն հաղորդակցութեամբ կ'ընդունի կեանքն Անոր, որուն գործերն կը պատկերացնեն այդ Աւետարանները ։

Այս չորս Աւետարանները իրարմէ անկախ կերպով գրուած են Ս. Հոգւոյն օգնականութեամբ և ներշնչմամբ ։

Այս չորս Աւետարանները պատահական եղանակով մը թերեւս, Ա. դարուն մէջ Եկեղեցւոյ չորս գլխաւոր սահմաններէն, Պաղեստինէն, Իտալիայէն, Սուրիայէն և Փոքր Ասիայէն ի լոյս եկած են ։

Այս չորս միջավայրերը նպաստեցին որոշելու այն երեւոյթը, որով ներկայացած է Քրիստոս այս Աւետարաններուն իւրաքանչիւրին մէջ ։

Պաղեստինի մէջ, Մատթէոս յայտարա-

րեց զՅիսուս Աստուծոյ սուրբ արքայութեան իբրև կատարիչ, մարգարէներէն գուշակուածը և Իսրայելէն սպասուածը։ — Հռովմայ մէջ՝ Մարկոս ներկայացուց զԱյն իբրև անդիմադրելի յաղթական մը, որ իր հրաշալի իշխանութեան վրայ կը հաստատէ իր աստուածային իրաւունքը աշխարհը շահելուն համար։ — Յոյն մեծանձն, քաղցրաբարոյ ժողովրդեան ծոցին մէջ՝ Ղուկաս նկարագրեց զԱյն իբրև աստուածային մարդասէրը, որ յետին մեղաւորին նկատմամբ շնորհաց և աստուածային գթութեան գործը կատարելու պաշտօնն ստանձնած է։ — Փոքր Ասիոյ մէջ, որ որրանն էր հին աստուածիմաստութեան, Յովհաննէս նկարագրեց զԱյն իբրև մարմին եղած ԲԱՆը, ժամանակին մէջ եղած յաւիտենական Կեանքն ու Լոյսը։ Եւ ահա այսպէս իւրաքանչիւր Աւետարանիչ զինքը շրջապատող շրջանակին մէջ թողած խորին համակրութեան մը ազդեցութեան տակ ի վեր հանեց ի Քրիստոս այն կողմը, որով լաւ եւս կը համապատասխանէր իր ընթերցողներու իտէալին։

Մեր Աւետարանները մէյմէկ մագնիսներ են, որ իրենց կը քաշեն մարդկային բնութեան խորքերուն մէջ գտնուած ամէն ինչ՝ որ աստուածային է։

Երբեմն հարցուած է՝ թէ ինչո՞ւ փոխանակ չորս Աւետարաններու, Ս. Հոգին մէկ հատ չարտադրել չէ տուած, որուն մէջ բոլոր իրողութիւնները շարուած ըլլային իրենց ժամանակագրական կարգով, և Յիսուսի պատմութիւնը գծուած ըլլար անվիճելի ճշգրտութեամբ մը։ Եթէ աւետարանական խմբագրութիւնը մարդկային խորհուրդի գործ եղած ըլլար, այս ձեւն անշուշտ առած պիտի ըլլար։ Բայց ճիշդ հոս է՝ որ կը չօշափենք բոլորովին աստուածային հանգամանքը այն մղումին, որ պատճառած է զայդ։ Ինչպէս ճարտար նկարիչ մը, որ կ'ուզէ ընտանիքի մը համար պահել անոր փառքը կազմող հօր մը կատարեալ պատկերը, պիտի զգուշանար միայն մէկ կենդանագիրի մը մէջ ամփոփել անոր ունեցած զանազան պաշտօններու պատուանշանները. օրինակի համար ցոյց տալու զայն միանգամայն միեւնոյն պատկերին

մէջ իր բանակի զինուորական համազգեստով և անձնական տարազով, յետոյ իբրև զինուոր և իբրև հայր. և չորս տարբեր կենդանագիրներ պիտի չինէր, որոնցմէ իւրաքանչիւրը պիտի ներկայացնէր զայն մէկ դերի մը մէջ, այսպէս ալ Աստուծոյ Հոգին, այդ նրբաճաշակ նկարիչը, պահելու համար մարդկութեան կատարեալ պատկերն Անոր, որ իր ընտրելագոյն ներկայացուցիչն եղաւ, Աստուած այդ Հոգիով իր գործիչներուն հոգին մէջ արթնցուց չորս զանազան պատկերներ. Իսրայէլի թագաւորին (Մատթէոս), և աշխարհի Փրկչին (Ղուկաս). Որդւոյն, որ իբրև մարդ մազլցելու աստուածային գահուն սանդուղները (Մարկոս), և Որդւոյն, որ կ'իջնէ մարդկութեան ծոցը սրբագործելու համար աշխարհը (Յովհաննէս)։

Հնագոյն ժամանակներէն սկսեալ մեր կանոնական Աւետարանները բաղդատուած են Եզեկիէլի մէջ Աստուծոյ գահը կրող Քերովբէներու իւրաքանչիւրին չորս կերպարանքներուն հետ։ Այս բաղդատութիւնը տեղի տուած է շատ մը կամայական և

*տղայական մերձեցումներու։ Բայց աւելի յարմար է բաղդատել զանոնք այն չորս կենդանիներուն (Յայտ. Ե. 8։ ԺԴ. 3) որոնցմով Յայտնութեան գրքին Հրեշտակը (ԺԴ. 6) կը տանէր ընդ ամենայն աշխարհ յաւիտենական Աւետարանը, աստուածային փառաց գահը։*

## ՎԵՐՋ